

# ԱՌԱՋԻ՛Ն ՁՅՈՒ՛ՆԸ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Առաջին ձյունը բուրում է տամուկ՝
Փարախում քնած գառների բույրով,
Բուրում է փափուկ մատներով քամու
Եվ մանուկների մրսած համբույրով:

Առաջին ձյունը բուրում է մաքուր,
Շիկնած այտերով փոքրիկ աղջկա,
Վարսերի բույրով մեղմորեն թաքուն,
Փաթիլների պես ուսերին ընկած:

Առաջին ձյունը բուրում է բարի,
Բուրում է անուշ քո մոր ձեռքերով,
Բուրում է բույրով հացի, ամբարի,
Եվ վաղուց-վաղուց մարած երգերով:



# ՁՄԵՌԱՅԻՆ ՀԵՔԻԱԹ

ԱԲԻԳ ԱՎԱԳՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Փոքրիկ բանջարանոցն ընկած էր Նախկին փոստատարի տնակից մի հիսուն քայլաչափ հեռու: Դրանից մի հիսուն քայլաչափ էլ այն կողմ եղևնուտն էր, որտեղ քամիներից խշշում էին մի երկու-երեք տասնյակ մշտադալար եղևնիներ:

Ձմեռը դեռ նոր էր սկսվել, երբ ծերունի փոստատարն իր թոռներով, որոնք շրջկենտրոնից հյուր էին եկել պապիկին, հավաքվեցին ու բանջարանոցի հողը բրեցին: Պապիկն իջավ նկուղ, այնտեղից երկու ցցափայտ բերեց, խաչաձև մեխեց իրար, հետո գնաց հնոտիների միջից առանց ուսադիրների ու կոճակների մի քրքրված զինվորական թիկնոց և մի լայն հովարով գլխարկ բերեց, ցցափայտը տնկեց բանջարանոցի ուղիղ մեջտեղում, թիկնոցի թևերը մտցրեց խաչաձև փայտի երկու կողմերը և լայն հովարով գլխարկը տեղավորեց ցցափայտի գագաթին: Թոռներից մեկը՝ ամենահնարամիտը, ինչ-որ տեղից գտավ սև, մազմզոտ պարանի մի կտոր և մեխեց գլխարկի հովարից մի թզաչափ ներքև: Այդպիսով խրտվիլակը նմանվեց երկայնաքեղ, լղլող, փնթի զինվորի:

Դրանից հետո եղևնուտում աշխուժություն տիրեց, գիշերները, երբ տներում մարմրում էին լույսերը և մարդիկ քուն էին մտնում, կյանքը դրսում կենդանանում էր: Եղևնիները կարծես խոսքները մեկ արած ծիծաղում էին խեղճ խրտվիլակի վրա: Բոլորից շատ ծիծաղում էր բանջարանոցին ամենամոտ եղևնին՝ ամենամեծն ու ամենափարթամը:

— Չեմ հասկանում,— ասում էր նա,— ինչպե՞ս հանդուրժեցիր, որ մարդիկ քեզ այդքան այլանդակ ու ծիծաղելի ստեղծեն: Ցավալի է, հարևա՛ն, որ դու չես կարող ինքդ քեզ տեսնել, ախր դու այնքան նման ես դասալիք զինվորի, և, ընդհանրապես, ինչո՞ւ պատրաստեցին քեզ, ի՞նչ բանի ես ընդունակ:

Զինվոր-խրտվիլակը վիրավորված ինքնասիրությամբ պատասխանում էր.

— Հասկանալի է, թե ինչու. որպեսզի ես նրանց բանջարանոցը պաշտպանեմ թռչուններից՝ ծտերից, սարյակներից, վայրի աղավնիներից, սերմնագողերից: Իսկ դուք, խնդրում եմ, մի՛ ծիծաղեք և մի՛ մոռացեք, որ ես ձեզ հետ տոհմական կապ ունեմ:

— Ինչպե՞ս թե...— ծիծաղից նվաղելով բացականչեցին եղևնիները:

— Այո՛: Ժամանակին ես էլ եմ ապրել անտառում, որքան հիշում եմ՝ մեր անտառը ծովի նման լայնարձակ էր, թավուտներում զարհուրելի գազաններ էին ապրում և երբ գիշերները նրանք ոռնում էին ու մռնչում, երկնային աստղերը սարսափից դողում էին: Պատահում էր, որ մարդիկ գալիս էին կացիններով ու սղոցներով: Իմ հերթն էլ հասավ. ինձ կտրեցին, մերկացրին ճյուղերից, կեղևահան արին, քերթեցին: Մի քանի տարի շարունակ ես ծառայել եմ այս ծերուկին, այն ժամանակ նա երիտասարդ ձիավոր փոստատար էր, ծառայել եմ նրան որպես տունը շրջափակող ցանկապատի մի ճաղ, հետո ցանկապատը քանդեցին ու թափեցին նկուղ: Ամեն օր սպասում էի, որ ահա ինձ կհանեն նկուղից, կվառեն թոնիրում կամ բուխարիկում, բայց չվառեցին, և ահա, ինչպես տեսնում եք, ես կրկին ծերուկին պետք եկա: Խնդրում եմ մի՛ ծիծաղեք, լավ չէ:

— Հասկանալի է,— ասաց բանջարանոցին ամենամոտ եղևնին,— բայց գոնե մի կարգին կերպարանք տային քեզ... Աստ-

ված իմ, ախր դու չես տեսնում քո գլխարկը, քո բեղերը, քուրձը...

— Թքած՝ բեղերի, գլխարկի, քուրձի վրա, ես երանելի՜, երանելի՜ հիշողություններ ունեմ, որոնց մի ծվենը չեմ փոխի ձեր քնձոռոտ եղևնուտի հետ, որտեղով նույնիսկ մի շլդիկ նապաստակ չի անցնում: Մոտալուտ գարնանային ամպրոպների սարսափ եմ ես ապրել, երբ գալարաձև մթին ամպերը սպառնագին կախվում էին անտառի վրա և տարերային ճայթյունի կանխազգացումի հաճույքից ծառերը դողում էին... Ծանթահար կաղնու անկումն եմ տեսել... Արքունքի հասած վարազների, որոնք դիկոտում էին գարնան առաջին շնչից և ժանիքներով ճեղքում էին կաղնիների բները... Խեժի ու խազալի բուրմունքը՝ ամռան միջօրեների տապին... Շոգ ու խավար գիշերների գիշերահավերի կռինչը... Ձագին կորցրած մայր եղնիկի ողբը՝ աշնան արևամուտներին... Աստված իմ, հապա ձմեռների լուսընկան, սոված գայլերի գզվըռտոցը...

Այս բոլորը վերհիշում, վերապրում է զինվոր-խրտվիլակը և ոչինչ չի ասում ամենամոտ եղևնուն. ի՞նչ ասես, միևնույն է, նա ոչինչ չի հասկանա, նրա համար տարվա բոլոր եղանակները մեկ են, ամառ թե ձմեռ նույն կանաչ շորն է հագին, ո՛չ մրսել գիտի, ո՛չ շոգել, ո՛չ շանթի սարսափ է ապրել, ո՛չ անկում:

Մինչև աշնան վերջը զինվոր-խրտվիլակը բարեխղճորեն ծառայեց նախկին փոստատարին: Տեսնելով նրա սպառնագին ցցված բեղերը և տարածած թևերը՝ թռչունները չէին հանդգնում բանջարանոցին մոտենալ, իսկ եղևնիները ծիծաղում էին.

— Ա՜յ թե հիմար արարածներ են այդ թռչունները, նրանք չգիտեն, որ այս դասալիք զինվորի վառոդը թաց է:

Աշնան վերջին բանջարանոցը դատարկվեց բանջարեղենից, բայց զինվոր-խրտվիլակը դեռ ցցված էր իր թափուր գահին: Նա ուրախ էր, որ մինչև եկող գարուն ազատված է պարտականություններից, ուրախ էր, որ շուտով ձմեռ կգա և ձմռան երկար գիշերներին կվերհիշի հայրենի հեռավո՜ր, հեռավո՜ր անտառը ու գայլերի ոտնահետքերը՝ բացատների բյուրեղյա ձյան վրա:

Ձմեռը եկավ: Ձյունը ծանրացավ զինվոր-խրտվիլակի գլխարկին, ուսերին, և բեղերի ծայրերը կախվեցին. դրանից նա մի փոքր հոգնած ու մռայլ կերպարանք ստացավ:

Մի օր էլ, ճաշից հետո, տնակի դուռը բացվեց և փայտե սանդուղքներով իջան պապիկն ու իր թոռները: Պապիկի ձեռքին երկար սղոց կար: Նրանք մոտեցան եղևնուտին ու սկսեցին տնտղել ծառերը: Երկար տնտղեցին, և վերջապես ծերուկի մատը դաժան նետի պես ուղղվեց բանջարանոցին ամենամոտ փարթամ եղևնուն: Սղոցը գործի դրեցին: Զինվոր-խրտվիլակին լավ ծանոթ էր այդ արարողությունը: Սղոցի զարհուրելի խռխռոցը հիմա նա զգում էր իր վրա և մտածում էր. «Նրա ընկերներն այդ չեն ըզգում»:

Փարթամ եղևնին թեքվեց ու փափուկ ընկավ ձյան վրա: Հետո երեխաները նրա ճյուղերից բռնած՝ քարշ տալով տարան տնակը և դուռը շրխկոցով փակեցին:

Գիշերը եղևնուտում լռություն էր քարացել՝ կապարի պես ծանր, ձյունի պես սառը լռություն:

— Հարևա՜ն զինվոր-խրտվիլակ,— գիշերը եղևնուտից մեկը ձայն տվեց նրան,— ի՞նչ կլինի, գնա պատուհանից նե՛րս նայիր, տես մեր քույրիկին նրանք ինչո՞ւ տարան: Մենք արմատներ ունենք և գնալ չենք կարող:

Զինվոր-խրտվիլակը մի ոտքով ձյան վրա ցատկելով գնաց, մոտեցավ պատուհաններին, երկար, երկար նայեց, վերադարձավ, ցըցվեց իր տեղն ու ասաց.

— Մի՛ տխրեք, սիրելինե՛րս, ձեր քույրիկի ճյուղերից փայլփլուն զարդեր են կախել, գույնզգույն լույսեր վառել և երեխաները նրա շուրջը պար են գալիս ու երգ են ասում:

— Դե լավ է, որ այդպես է,— ասացին նրանք բոլորը միաձայն:

Մի քանի օր հետո, նախկին փոստատար պապիկը բաց արեց տնակի դուռը, թոռներն արդեն վերադարձել էին շրջկենտրոն, և նախկին փարթամ եղևնին քարշ տալով բերեց ու նետեց զինվոր-խրտվիլակի ոտքի մոտ, ձյուների մեջ:

Եղևնուտում նորից լռություն իջավ՝ կապարի պես ծանր, ձյունի պես սառը:

Զինվոր-խրտվիլակը եթե չար լիներ ու քինախնդիր, հիմա ինքը կծիծաղեր, բայց չար չէր և ոչ էլ քինախնդիր, որովհետև մի ժամանակ նա ապրել էր անծայրածիր անտառում, գարնանային մոտալուտ ամպրոպների սարսափն էր զգացել, դողացել էր տարերային ճայթյունների կանխազգացումի հաճույքից, գարնան առաջին շնչից դիվոտած վարազներ էր տեսել ու շանթահար կաղնի, լսել էր ամռան մթին գիշերների գիշերահավերի կռինչը և ձագին կորցրած մայր եղնիկի ողբը՝ աշնան արևամուտներին...



## Բ Ն Ա Պ Ա Տ Կ Ե Ր

*ՍԵՅՐԱՆ ՀՈՎԱԿԻՄՅԱՆ*

Ծաղիկները
Փշրանքներն են արևի,
Ցողը լույս է,
Որ իջնում է տերևին։
Աղբյուրները
Հողի աչքերն են մաքուր,
Միածանը
Տաք ժպիտն է ամպերի,
Ծամփաները
Երազներ են մշտարթուն,
Ու ժայռերը
Դարեր են լուռ՝ մտած քուն...



# ԵՐԿԱՐ ԾՐՋԱԴԱՐՁ ԿԱՐՃ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

*ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ* *Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

Մենք պարապում էինք հարևան սենյակում, որտեղ քնում էինք, իսկ հյուրասենյակում կռվում էին մեր հայրերը։ Մեր մայրերը, մեր քույրերին գրկած, ներխուժում էին մերթ մեր, մերթ մեր հայրերի սենյակը և նրանց բարձրացրած աղմուկի տակ մի սենյակում պարապում էին, մյուսում՝ կռվում։ Մեր մայրերը տքնում էին մեղվի նման՝ լվանում էին ու սրբում, եփում էին ու կերակրում, օրորում էին ու քնեցնում, գանգատվում էին ու անիծում, բայց էլի չէին հասցնում, և մեկ թվում էր, քաղցած ենք, հորեղբորս թվում էր, անդրավարտիքը լավ չի արդուկված, հայրս հայտնաբերում էր, որ մաքուր թաշկինակ չունի, իսկ մեր քույրերը պահանջում էին օրորել ու օրորել իրենց։ Մեկ պատժում էին ու փաղաքշում միաժամանակ չորս զույգ ձեռքեր, բայց այդ ձեռքերի պատիժը մենք ավելի թեթև էինք տանում, քան փաղաքշանքը։ Պատժող ձեռքը դիպչում էր ու հեռանում արագ, երբեմն չէր հասցնում դիպչել՝ փախչում էիր, իսկ փաղաքշանքը համառ էր ու կպչուն, խուսափել չէր լինում, և ձեռքը երկար ժամանակով նստում էր մազերիդ կամ ուսիդ։ Մեր մայրերի ձեռքերը կերակրի, օճառի ու երեխայի հոտ ունեին, հորս ձեռքերից մեքենայի յուղի ու ծխախոտի հոտ էր գալիս, և միայն հորեղբորս ձեռքերն էին անհոտ։ Հայրս աշխատանքի էր գնում մթնով, մթնով վերադառնում, հորեղբայրս կանգնում էր լուսամուտի մոտ, կամ թերթ կարդում, կամ ճեմում սենյակի մի անկյունից մյուսը, իսկ մենք դպրոց էինք գնում, վերադառնում և նստում էինք պարապելու։ (Իմ մտքով երբեք չէր անցել, թե մեր ազգանունն ու Մնացականի անունը սրամտելու ինչ անսպառ հնարավորություններ են տալիս)։

— Մնացակա՛ն,— ասում էի ես,— ի՞նչ խոսքի մաս է «մնացականը»։

— Դա մեր դասից չի,— ասում էր Մնացականը։

— Ոչինչ, դու պատասխանի՛ր, սա կրկնություն է։

— Իմ անունն է,— ասում էր Մնացականը,— հատուկ անուն է։ Գոյական։

— Ո՛չ,— ասում էի ես,— այս «մնացականը» ածական է։ Պա՞րզ բառ է, թե՞ ածանցավոր, Մնացակա՛ն։

— Չգիտեմ,— համառում էր հորեղբորորդիս։

— «Ականը» հանեցինք, ի՞նչ մնաց, Մնա՛ց։

Սկիզբը՝ «Պիոներ» № 11-ում։

— Չգիտեմ,— նորից էր համառում հորեղբորորդիս:

— Մնա՛ց, մնաց՝ «մնաց»: Կրկնի՛ր, Մնա՛ց:

— Մնա՛ց-մնա՛ց-մնա՛ց,— ասում էր Մնացականը,— ձե՛ռք քաշիր ինձանից, չեմ ուզում պարապել:

— Չեղավ, Մնա՛ց,— ասում էի ես,— երեք «մնացը» էլ նույն ձևով ես ասում: Առաջին «մնացը» քո անունն է, երկրորդը բայ է, իսկ երրորդը «մնացական» բառի արմատը:

Մյուս սենյակում հորեղբայրս ետ ու առաջ էր քայլում և ձեռքը թափահարելով խոսում էր.

— Տո՛ւն, սեփական հա՛րկ: Հա՛, հա՛: Ի՛նչ ասել է տուն, ի՛նչ ասել է՝ սեփական հարկ: Որտե՞ղ է մարդը տուն դնում: Մարդը տուն է դնում այնտեղ, որտեղ, գիտե, մնալու է:

Վերջապես հորս հաջողվում էր կտրել եղբոր խոսքը:

— Քո տունը սա է:

— Հը՛մ,— գլուխն էր ցնցում հորեղբայրս,— սա՛ է, այստեղ մանկությո՛ւնն եմ անցկացրել, պատանեկությո՛ւնն: Հա՛, հա՛: Գրանցված եմ այստեղ: Գրանցումը դեռ ոչինչ չի նշանակում, եղբա՛յր, փաստաթուղթը մարդուն չի կարող ձգել, փաստաթուղթը կարոտ չի՛ դառնում:

— Բայց մի տեղ պիտի ապրե՞ս, թե՞ չէ,— ասում էր հայրս:

— Ցավն էլ հենց դա է,— հորեղբայրս ձեռքով անորոշ շրջանակ էր գծում օդում:— Բա՛յց ինչո՞ւ անպայման այստեղ, ո՞վ ունեմ Երևանում: Ոչ ոք:

Հայրս, մի քիչ վիրավորված, ասում էր.

— Հապա ե՞ս:

— Հը՛մ,— գլուխն էր վեր նետում հորեղբայրս,— այո՛, դու: Բայց դու կաթիլ ես ծովում, եղբա՛յր: Քանի՞ բնակիչ ունի Երևանը:

— Ո՛ւթ հարյուր հազար,— տեղիցս գոռում էի ես:

— Դասերի՛դ նայի՛ր,— ի պատասխան գոռում էր հորեղբայրս:— Ճիշտ է ասում տղան, ութ հարյուր հազար անգամ անիծվա՛ծ լինեմ ես: Ութ հարյուր հազար և մի եղբայր,— հորեղբայրս ավելի մեծ շրջանակներ էր գծում օդում:— Քիչ է, եղբայր, քիչ է:

Մենք շարունակում էինք պարապել:

— Պարզ համառոտ նախադասություն կազմիր, Մնա՛ց,— ասում էի ես:

— Տրակտորը դաշտ դուրս եկավ,— ասում էր Մնացականը:

— Չեղավ, Մնա՛ց: Միայն ենթակայով ու ստորոգյալով: Օրինակ՝ Մնացը մնաց:

— Դու ես մնացել,— ասում էր հորեղբորորդիս:

— Սա նախադասություն է, Մնա՛ց, մենք պարապում ենք: Ո՛րն է ենթական, Մնա՛ց:

— «Մնացը»,— ասում էր Մնացականը:

— Ո՛ր «մնացը», Մնա՛ց: Մեծատառո՞վը, թե՞ փոքրատառովը:

— Մեծատառովը,— ասում էր Մնացականը:— Չէ՛, փոքրատառովը: Այն մեկը, որը ես չեմ:

— Չեղավ,— ասում էի,— Մնա՛ց, լա՛վ մտածիր, Մնա՛ց:

Հորեղբայրս ասում էր.

— Աշխատանք չկա:

— Չես փնտրում՝ չկա,— պատասխանում էր հայրս:

— Որտե՞ղ փնտրեմ, սեղանի տա՞կ,— բարկանում էր հորեղբայրս:— Աշխատանքն ասեղ չի, եղբա՛յր: Ասա՛ ինձ, խնդրում եմ, քանի՞ դպրոց կա Երևանում:

— Ասենք թե հարյուր:

— Թող լինի հարյուր,— համաձայնում էր հորեղբայրս:— Իսկ հիմա հաշվի՛ր, թե քանի ուսուցիչ է աշխատում այդ դպրոցներում:

— Ասենք թե հազար,— ուսերն էր թոթվում հայրս,— հետո ի՞նչ:

— Տա՛սը հազար, եղբա՛յր, տա՛սը հազար,— ձեռքերը տարածելով, բացականչում էր հորեղբայրս:— Չէ՛, եղբա՛յր, ես լու չեմ, որ ասեղի ծակով անցնեմ: Այստեղ մնացողը չեմ, Երևանը թերի բարձրագույնիս տեղը չի:

— Գնա գործարա՛ն, ավելի շատ կստանաս,— խորհուրդ էր տալիս հայրս:

— Գո՛րծարա՛ն,— հորեղբայրս տարօրինակ չեշտադրությամբ էր արտասանում այդ բառը, ասես «գործն» առանձին բառ էր, «արանը» առանձին:— Ինչո՞ւ պիտի գնամ գո՛րծ-արա՛ն:

— Աշխատելու,— ասում էր հայրս:

— Աշխատելո՛ւ,— բարկանում էր հորեղբայրս:— Ի՛նչ ասել է՝ աշխատանք: Հա՛, հա՛: Ո՛չ, եղբա՛յր, աշխատանքը մի այնպիսի բան է, որ քեզ ոչ միայն հաց է տալիս, այլև բավականություն, մեծագո՛ւյն բավականություն:

— Հաց նույնպես պետք է,— թույլ դիմադրում էր հայրս:

— Հոգու թռիչք, հետո նոր՝ հա՛ց,— բացականչում էր հորեղբայրս:— Եղբա՛յր, դու ինձ չես հասկանում:

Ականջներս նրանց վեճին, մենք շարունակում էինք պարապել:

— Չի՞ լինի, որ երկու «մնացն» էլ փոքրատառով լինեն,— հարցնում էր Մնացականը:

— Չի լինի,— ասում էի ես,— մեկը ենթակա է, մյուսը ստորոգյալ: Մնա՛ց, ի՛նչ է ցույց տալիս ստորոգյալը:

— Հը՞,— հարցնում էր Մնացականը,— փոքրատառո՞վը:

— Փոքրատառովը:

Հորեղբորորդիս կնճռոտում էր ճակատը, մտածում էր ու ասում.

— Ուրիշ նախադասություն կազմենք, սա ինձ դուր չի գալիս: Օրինակ՝ Տրակտորը...

— Այս նախադասության մեջ ստորոգյալը ցույց է տալիս կատարված, ավարտված գործողություն,— բացատրում էի ես,— այսինքն, որ մեծատառով «Մընացը» մնացել է նույն դասարանում:

— Ես դեռ չեմ մնացել,— բողոքում էր Մնացականը:

— Չես մնացել, կմնաս:

— Չեմ մնա, կգնամ Ապարան:

— Ապարանում կմնաս:

— Ապարանում ես գերազանցիկ էի:

Այդ նույն պահին մյուս սենյակում հորեղբայրս ասում էր.

— Գուցե գնամ Ապարան:

— Ապարանում աշխատել ես,— ասում էր հայրս:

— Վաղուց, վաթսուն թվին: Չէ՛, վաթսունչորս: Չէ՛, ի՞նչ եմ ասում,— հորեղբայրս ձեռքն է թափ տալիս,— Մնացականը Ապարանում առաջին դասարան գնաց, գերազանցիկ էր:

— Ապարանում աշխատանքը թափա՞ծ է,— հարցնում էր հայրս:

— Թափած է, եթե տեր կանգնող չի լինում, ավլում, սրբում, դեն են գցում:— Հորեղբայրս իջեցնում էր ձայնը.— Ժողկրթբաժվարը ծանոթ է, մոտիկ մարդ է, միասին ենք սովորել մանկավարժականում:

— Նա էլ է՞ թերի բարձրագո՞ւյն,— հարցնում էր հայրս, բայց հորեղբայրս արդեն նրան չէր լսում, շուռ գալով հրամայում էր.

— Մանուշա՛կ, իրերը կապի՛ր:

Հայրս լրջորեն անհանգստանում էր:

— Ի՞նչ կարիք կա այդքան շտապելու, հո այսօր չե՞ս մեկնում:

— Իրավացի ես, արդեն մթնել է,— համաձայնում էր հորեղբայրս ու փոխում էր կարգադրությունը:— Մանուշա՛կ, իրերը հանգի՛ստ թող, երեխայի ձայնը կտրի՛:

— Բացի այդ, Մնացականը թող հանգիստ ավարտի յոթերորդ դասարանը,— ուրախանում էր հայրս, իսկ հորեղբայրս սառը ջուր էր լցնում նրա ուրախության վրա.

— Իհարկե, թող հանգիստ մնա յոթերորդ դասարանում:

Բայց Մնացականը չմնաց: Արձակուրդների օրերին հորեղբորս կինը իսկապես սկսեց իրերը կապել: Ես մորս հարցնում էի, թե ինչո՞ւ է հորեղբայրը գնում. և մայրս պատասխանում էր.

— Այդպես է ստեղծվել հորեղբայրդ:

— Իսկ ինչո՞ւ հայրս այդպես չի ստեղծվել:

— Չգիտեմ,— ասում էր մայրս,— հանգի՛ստ թող ինձ:



Մարտը վերջանում էր, բակում համարյա ձյուն չէր մնացել, թե ասեմ՝ հալվել էր, հալվելը չէի տեսել, ասեմ՝ չէր հալվել, բայց ախր ձյուն համարյա չկար, փոխարենը կար ցեխ, և բենզատարի վարորդը, որ մե-

քենան մեր դռանն էր մոտեցրել, նայում էր ցեխոտ անիվներին և գլուխն էր օրորում:

— Դա դեռ դժբախտություն չի,— հանգստացնում էր նրան հորեղբայրս,— ա՛յ, եթե դողերդ ճանապարհին ծակվեն, այն ժամանակ ես էլ քեզ հետ կօրորեմ գլուխս:

Հորեղբայրս կռվում էր վարորդի հետ, Մնացականը նրանց կողքին կանգնած՝ լսում էր, իսկ ես ու հորեղբորս կինը իրերն էինք կրում և տալիս թափքում կանգնած հորս:

— Տեղափոխվիր Ապարա՛ն, քեզ լավ աշխատանքի տեղավորեմ,— խոստանում էր հորեղբայրս:

— Ես երևանցի եմ, ի՞նչ գործ ունեմ Ապարանում,— պատասխանում էր վարորդը:

— Աշխա՛րհ տես, մարդկա՛նց ճանաչիր,— հորեղբայրս վարորդին սիգարետ էր հյուրասիրում:

— Ապարանից Երևան են փախչում, ես Ապարան գնա՞մ,— քմծիծաղում էր վարորդը և վերևից ներքև նայում հորեղբորս:

— Սխալ ես մտածում, երիտասա՛րդ, սխալ,— հորեղբայրս լուցկին մոտեցնում էր վարորդի սիգարեթին:— Բոլոր մեծ մարդիկ սիրել են ճանապարհորդել, աշխարհներ տեսնել:

Վարորդը ծուխը ներս էր քաշում, կարմացած նայում էր հորեղբորս.

— Ես փոքր մարդ եմ:

— Ահա թե ո՞րն է քո սխալը,— ուրախացած բացականչում էր հորեղբայրս և ամեն ինչ մոռացած, մի քանի քայլ էր գցում ցեխի մեջ:— Փոքր մարդ չկա, բոլոր մարդիկ մեծ են, միայն թե իրենք չգիտեն այդ, կամ նրանց հակառակն են ներշնչել: Դու մեծ մարդ ես, երիտասարդ, շատ մեծ, հիշի՛ր խոսքերս, ականջիդ օ՛ղ արա:

Վարորդն է՛լ ավելի կարմացած էր հորեղբորս դիտում, հետո մեկ էր նայում, հուսալով մեր դեմքին կարդալ հորեղբորս տարօրինակ վարքագծի պատասխանը, իսկ մենք, բոլոր իրերը կրած, թափքում բարձած՝ սպասում էինք հորեղբորս:

«Մնացը գնաց»,— մտքումս ասում էի ես, չհամարձակվելով այդ ասել բարձրաձայն և նայում էի, թե հորեղբորորդիս ինչպես է տեղավորվում անկողինների ուռած ու փքված կապոցի վրա: Խցիկից, վարորդի կողքին նստած, նայում էր հորեղբորս կինը, հորեղբայրս ցեխոտված կոշիկներն էր խոզանակով մաքրում, մաքրեց, փայլեցրեց շորով և բարձրացավ նստեց Մնացականի կողքին: Մինչև այդ հորս ասել էր. «Դե՛, քեզ մենակ չպգաս, որևէ բանի կարիք ունեցար, ինձ իմա՛ց տուր, իսկ ես, քանի դեռ աշխարհում մի չչափած ճանապարհ կա, երևի պիտի չափեմ»,— հիմա նստեց ուղիղ, գլուխը բարձր, կարծես ոչ թե բրեզենտածածկ թափքում անկողինների պրկված ու պայթող կապոցին էր նստել, այլ՝ իշխանական գահին, մաքուր ու կոկիկ հագնված, ասես ոչ թե բեռնատարով Ապարան պիտի գնար, այլ՝ փափուկ մեքենայով իր պատվին կազմակերպված հանդեսին: Մեքենան աղմկեց, անիվները պտտվեցին ցեխի մեջ, հայրս իր կոշտ, ամենևին էլ ոչ իշխանական ձեռքը գլխին դրեց, հորս շնչառությունը ծանր էր, հորս թոքերն աղմկում էին, խցիկում լաց եղավ հորեղբորս աղջիկը, մորս գրկից նրան ձայնակցեց քույրս, մայրս տուն մտավ, ասելով. «Երեխաս սառեց», ու էլի ինչ-որ բան, որը ես չլսեցի, իսկ մեքենան այդ պահին արդեն դուրս էր եկել դարպասից:



# «Հեյ, Վիլյամ Սարոյան»

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

Երևի ոչ բոլորը զգացած լինեն, որ հեռախոսային մի զանգ կարող է ամենասովորական, տաղտուկ օրվա մեջ այնպիսի մեծ փոփոխություն մտցնել և այնպես շուռ տալ ամեն ինչ, որ օրը վերջանա սքանչելի, հուզիչ ապրումներով: Եվ դրան հաջորդող մի քանի օրվա ընթացքում նույնպես մարդ իրեն երջանիկ զգա, հիշելով տեղի ունեցածը:

Սկսվեց կարճ երկխոսությամբ:

— Ալլո՛, դուք սիրո՞ւմ եք Վիլյամ Սարոյանին:

— Օ՜, այո՛:

— Այդ դեպքում համեցեք Երևանի № 114 դպրոց և դուք ինչ-որ բան կտեսնեք, որը կապված է Սարոյանի հետ:

Մարդուն հրավիրում են դիտելու մի ներկայացում, որի հեղինակը Վիլյամ Սարոյանն է: Ավելի հաճելի բան կարո՞ղ է լինել: Ուրեմն ինչո՞ւ զարմանալ, եթե կիսանփ կարտոֆիլը բերանդ այրելով ուտես և գլխապատառ դուրս նետվես ու տնից մինչև դպրոց վազելով գնաս:

Այդ դեպքում նաև ինչո՞ւ զարմանալ, եթե մարդիկ ճանապարհին նայեն քեզ ու դու նրանց հայացքներում կարդաս. «Խելքը թռցրե՞լ է: Գետինը դարձել է սատանի երես, իսկ ինքը վազում է»:

Եթե քեզ հետ էլ այդպես պատահի, շարունակի՛ր վազել: Ուշադրություն մի՛ դարձրու շրջապատիդ վրա: Այլապես կուշանաս ներկայացումից: Պարզապես խղճա՛ նրանց, որովհետև նրանք չգիտեն մի շատ կարևոր բան: Նրանք չգիտեն, որ դու գնում ես դիտելու Վիլյամ Սարոյանի սքանչելի պիեսներից մեկը՝ սքանչելի դերասանների կատարմամբ:

* * *

Սև վերնաշապիկով, բարի ու ազնիվ տղայի ձեռքերից ու ոտքերից բռնած՝ բերում շպրտում են բանտախցի սառը հատակին, և հանդիսատեսի սիրտը սեղմվում է ցավից:

Սև վերնաշապիկով տղան տառապում է ցավից ու վիրա-

## ՁՄԵՌՆ ԵԿԱՎ

*ԶԱՎԵՆ ԿԱՍՅԱՆ*

Մարեց կարկաչն առուների,
Սառույց հագան գետ ու գետակ,
Մերկ ուսերին քարափների
Ձյունը փռեց շալն սպիտակ...
Թռչունների երգը լռեց,
Միայն ճնճղուկն է ճկճկում,
Ամեն սարից, ամեն ձորից
Ձմռան սառը շունչն է փչում...

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

## ՈՒՂՏԸ

*ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ*

Իմ սապատով,
Պիրկ սապատով
Ես անցնում եմ անապատով:

Ձեր հույսն առած իմ սապատին
Փուշն եմ ուտում անապատի,
Որ միշտ անփույշ լինի ճամփան
Ձեր մեծ հույսի ու հավատի:

Եվ մաշվում է սապատը իմ
Ավազներում անապատի,
Մինչև հեռվում հայտնվում է
Կանաչ գիծը ձեր հավատի:

Իսկ ես դատարկ իմ սապատով
Ետ եմ դառնում անապատով՝
Սկսելու համար նորից
Իմ սապատից, ձեր հավատից...

վորանքից, և նրա ապրումները էլեկտրական հոսանքի պես հաղորդվում են դահլիճին: Եվ ցավից ու վիրավորանքից, և մանավանդ անարդարությունից առաջացած յուրաքանչյուր շարժում ու հառաչ, ընկալվում են իբրև իրական ապրում:

Եվ երաժշտությունը, որ նույնպես մասնակից է դառնում տղայի տառապանքներին, աննկատ ներս է թափանցում, խըտացնելով գույները ու դպրոցի սովորական դահլիճի բեմը փոխակերպվում է ամերիկյան մռայլ բանտախցի:

ձագանք մնալ նրա բացականչությունը՝ «Հեյ, ո՞վ կա այդտեղ»:



Ոսկեմա՛զ աղջիկ, ժպտո՛ւն աչքերով աղջիկ, ժպտո՛ւն այտերով ու ժպտո՛ւն էությամբ աղջիկ: Ի՞նչ լավ էր, որ հենց դու լսեցիր տղայի հառաչանքները ու եկար թեթևացնելու նրա տառապանքը: Դու կյանքով լցրեցիր երկաթե վանդակապատ բանտախուցը:

Դու կյանքով լցրեցիր դահլիճն ամբողջությամբ:

կան հագուստ, ո՛չ բեմական կեղծ առոգանություն: Եվ ո՛չ էլ դերասան երևալու հավակնություն: Եվ հենց լավը դա էր:

Դու պարզապես սարոյանական էիր, անբռնազբոս և անպաճույճ, բարի և նվիրված:

Դու բանտի խոհարարուհու բնավորությունը հասկացել էիր այնքա՜ն հուզիչ պարզությամբ: Եվ դա վայել էր հրաշալի մի աղջկա, որը պատիվ ուներ խաղալու ոչ թե ուրիշ որևէ մեկի, այլ հենց Վիլյամ Սարոյանի գրած պիեսում:





Դահլիճում նստած էին հրաշալի տղաներ ու աղջիկներ:

Նրանք ոչ միայն գեղեցիկ էին ու ճաշակով հագնված, այլև խելացի էին ու խորապես ըմբռնող: Նրանց հետ անգլերեն լեզվով խոսում էր անձամբ ինքը՝ Վիլյամ Սարոյանը: Նրանց համար անգլերենը օտարոտի չէր ամենևին: Եվ ի՜նչ մեծ առավելություն էր դա՝ աշակերտներից յուրաքանչյուրի համար:

Հանճարեղ գրողը բեմից նրանց ասում էր՝

Ներողամիտ չլինեք, եթե ձեր ընկերների հետ անարդար վարվեն:

Ներողամիտ և անտարբեր չլինեք ստի, կեղծիքի, խաբեության և ամե՜ն, ամե՜ն տեսակ չարամտության ու չարագործության հանդեպ:

Եվ լեփ-լեցուն դահլիճը լսում էր Վիլյամ Սարոյանին ուշադիր ու մտասույզ: Եվ մասնակից էր դառնում տղայի ու աղջկա կարճատև երջանկությանը: Եվ ըստացած բավականության համար վարձահատույց լինում, ծափահարելով նրանց:



Եվ ինչպե՞ս կարող էր տղան տոկալ այդ մղձավանջին: Եվ ինչպե՞ս կարող էր անար-

Դու արհեստական ոչ մի միջոցի չէիր դիմել՝ դերասան դառնալու համար: Եվ հենց լավը դա էր: Ո՛չ գրիմ, ո՛չ բեմա-



# ՀՈՐ ԳԵՐԱՆԴԻՆ

*ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*

— Հե՜յ, Լևո՛ն, վե՞ր ես կացել:

Գևո պապի և թաղի մի խումբ կանանց հետ նա էլ էր առավոտը վաղ հնձի գնալու: Մայրը մի՛ երկու ձու խաշեց, հաց տաքացրեց ու պատշգամբի մնացած սյունից կախված հոր գերանդին իջեցրեց. Լևոնի հայացքից չվրիպեց մոր խոնավացող աչքերը:

— Սուր է, զգո՛ւյշ կլինես,— հազիվ շշնջաց մայրը,— հայրդ ասում էր՝ դժվար է սրվում, բայց լավ է գործ անում:

— Լա՛վ,— համաձայնեց Լևոնը և ուսն առավ հոր գերանդին: Գևո պապը մոտենում էր իրենց դռանը:

— Հը՞, չվերջացրի՞ր պատրաստությունդ:

Լևոնը անխոս հետևեց նրան: Մայրը նորից նայեց որդուն և ինքն էլ քայլեց դեպի ֆերմա:

Արտն ընկած էր տափարակի վրա, եզրերին՝ մասրենու, մամխենու թփեր և մի վայրի խնձորենի: Հացի և ջրի ամանները կախեցին ծառի ճյուղից: Գևո պապը կրկին ստուգեց գերանդիները և ինքը սկսեց առաջին ծոցը: Կանայք հետևեցին նրան: Լևոնը գնում էր վերջից: Պապը երբեմն-երբեմն խորհուրդներ էր տալիս մեկ սրան, մեկ մյուսին, բոլորն էլ առաջին անգամ էին գերանդի վերցնում: Նրանք լուռ ու մունջ կատարում էին պապի հրահանգները:

Գործը կարծես դժվար չէր, սակայն պապը անընդհատ պգուշացնում էր.

— Հանգի՛ստ, մի՛ շտապեք, բանը դանդաղ կանեն, որ շատ անեն...

Հետո ինքն էլ առաջարկում էր.

— Դե՛, մի քիչ հանգստանանք: Նա այդ հանգիստները վարպետորեն էր կազմակերպում, մեկ՝ թե պետք է ջուր խմել, մեկ՝ թե գերանդիները սրենք, մեկ՝ թե...

— Հացի ժամն անցավ, Լևո՛ն ջան, հարսնե՛ր, մի հացամանները էս ծառի տակը բերե՛ք...

Լևոնը զարմանում էր պապի հմուտ հոգատարության վրա դեպի հոգնած հարսները:

— Կախա՛նց հարս, դու հո կարգին հնձվոր ես,— ոգևորում էր մեկին:

Մյուսները ծիծաղում ու շարունակում էին գործը:

— Հա՛, էս արտը մեր Սուրենը մեկ օրում մենակ կհնձեր,— պատմում էր պապը,— ա՜յ տղամարդ եմ ասել, հա՜...

Կանայք տխուր նայում էին հեռու, հիշում իրենց հնձվոր ու մաճկալ հայրերին, եղբայրներին, ամուսիններին, որոնց գերանդիները հիմա քրտնում էին իրենց ձեռքերում, կոշտացնում ափերը:

— Լևո՛ն ջան, քո հերն էլ գերազանց հնձվոր էր, էդ գերանդին էլ էստեղի չի, Ռուսաստանից բերած բան է:

Լևոնը նայում էր գերանդուն, որը տարիներ շարունակ շփվել էր հոր ձեռքերին, ու սիրտը կարոտով էր լցվում:

— Բե՛ր, բե՛ր մի սրեմ:

Պապը փաղաքշանքով տղայի ձեռքից վերցնում էր գերանդին և պնդանի վրա ծեծում, սրում բթացած շեղբը:

Չիմացան, թե օրն ինչպես անցավ: Երեկոյան դեմ արտը գրեթե հնձել պրծել էին:

— Հերիք է,— ասաց պապը,— խամով կընկնեք, դեռ շատ ենք աշխատելու, հունձը նոր է սկսվում, տո՛ւն գնանք...

Ճանապարհին բոլորը լուռ էին, շտապում էին շուտ տեղ հասնել. կանայք հազար ու մի գործ ունեին տանը, փոքր երեխաներն էին սպասում նրանց:

Լևոնը թեթև՜-թեթև էր զգում իրեն, փետուրի պես թեթև, ու զարմանում էր, որ պապը վախենում էր, թե «խամով» կընկնի:

...Գիշեր էր: Հոգնած գյուղը վաղուց քուն էր մտել: Լևոնը անհանգիստ շուռ ու մուռ էր գալիս անկողնում. ասես մարմնի բոլոր մասերից քարեր էին կախել: Նոր էր հասկանում փորձառու պապի խոսքերի իմաստը. «Խամով կընկնեք»: Մկանները նվում էին, դժվարությամբ էր կողքից կողք շրջվում:

— Քունդ չի՞ տանում, բալե՛ս...

Մայրն էր: Նա էլ չէր քնել: Լևոնը այլևս չշարժվեց. թող մայրը չանհանգստանա: Այդպես շատ էր մնացել, թե քիչ, չէր հասկացել, քնել էր, երբ ասես երազում լսեց Գևո պապի մտերմիկ ձայնը.

— Լևո՛ն, ուշանում ենք, է՜, հունձը մնում է:

Մայրը պապի հետ մոլոր կանգնել էր նրա գլխավերևը: Նրանք գիտեին իր վիճակը, բայց ճար չկար, հունձը մնում էր: Լևոնը գլուխը բարձրացրեց. պատուհանի տակով, գերանդիներն ուսներին, անցնում էին հնձվոր կանայք: Նա ճիգ գործադրելով ելավ անկողնուց, հագնվելով, ասաց մորը.

— Գերանդին իջեցրո՛ւ...

# ՎԵՇԵՆՍԿԱՅԱՅԻ ՀՌՉԱԿԱՎՈՐ ԲՆԱԿԻՉԸ

*ՏԱԹԵՎԻԿ ՊՈՂՈՍՅԱՆ*

Վեշենսկայան, ուր ապրում է Շոլոխովը, թառած է բարձունքի վրա: Ներքևում Դոնի լայնարձակ տարածություններն են: Գետափից հեռու չէ գրողի տունը: Աշխարհին տեսանելի է տունն ինքը և կարծես տան պատուհաններն անգամ հետևում են աշխարհի անցուդարձին:

Հինավուրց Դոնի ափերին է անցել Միխայիլ Ալեքսանդրովիչ Շոլոխովի մանկությունը, երիտասարդությունը, հասունությունը և մինչև հիմա էլ Դոնի ափերին շարունակվում է 70 տարիներով իմաստնացած մեծ գրողի կյանքը:

1960 թվականին Կարգինսկայա ստանիցայի կոզակներին ուղղված նամակում Միխայիլ Շոլոխովը հայտնում է հայրենակիցներին, որ իրեն պարգևած լենինյան մրցանակը նա նվիրաբերում է ստանիցայում նոր դպրոց կառուցելուն՝ «այն հին դպրոցի փոխարեն, որտեղ ես գիր ու գրականություն եմ սովորել»: Շատ հիշարժան վայրեր կան գրողի համար Կարգինսկայա ստանիցայում: Ահա այստեղի եկեղեցական-ծխական դպրոցում է նա սովորել, տղաների հետ գնացել է գիշերով ձիեր արածեցնելու, Չիր գետում ձուկ է բռնել: Այստեղ գրվեցին «Դոնի պատմվածքներից» առաջինները:

Եթե դուք քիչ հեռանաք Կարգինսկայա ստանիցայից, կհայտնըվեք Բոգուչարում, որը առաջներում երկրորդական գավառային քաղաք է եղել: Կարգինյան տարրական դպրոցն ավարտելուց հետո, տեղի արական գիմնազիայում է շարունակել իր ուսումը Շոլոխովը: Ահա թե ինչ է հիշում այդ տարիներից նրա համադասարանցի՝ հիմա արդեն մասնագիտությամբ բժիշկ Գեորգի Պոդտիկայլոն.

— Ռուսաց լեզվի և գրականության դասերին գիմնազիստ Շոլոխովը հաճախ էր բարձրաձայն կարդում ժողովրդական հեքիաթներ և կամ ռուսական դասական գրականության ստեղծագործություններ: Կարդում էր ոգեշնչված, արտահայտիչ, կարողանում էր յուրովի հաղորդել կարդացածի բովանդակությունը: Միշա Շոլոխովը լավ ընկեր էր՝ համարձակ, ճշմարտախոս, մարդամոտ, սրամիտ: Մեր գիմնազիան դասական էր, իր խիստ օրենքներով: Ապա փորձեիր հանդիսասրահում շարժվել մեզ բոլորիս հոգնեցրած ընդհանուր աղոթքի ժամանակ, տեղնուտեղը կվաստակեիր դպրոցի տնօրենների երկարատև անբարյացակամ վերաբերմունքը: Սակայն կային համարձակ տղաներ, որոնք նըման «սուրբ» րոպեներին էլ մընում էին անկախ: Այդպիսին էր և Միշա Շոլոխովը: Ես հաճախ նրա կողքին էի նստած լինում աղոթքի ժամանակ և տեսնում էի, թե դեմքի ինչպիսի «երանավետ» արտահայտություն էր ունենում նա ծնրադրելիս: Գիմնազիայում կար լավ գրադարան և Շոլոխովը հաճախ մնում էր այնտեղ մինչև մութն ընկնելը:

Վերջերս մեր ողջ երկիրը նշեց Միխայիլ Ալեքսանդրովիչ Շոլոխովի ծննդյան 70-ամյա հոբելյանը: Նա ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ է, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի իսկական անդամ, լենինյան և պետական մրցանակների դափնեկիր:



Համաշխարհային ճանաչում գտած «Խաղաղ Դոն», «Հերկած խոպան», «Մարդու ճակատագիրը» գործերը յուրաքանչյուր պատանու սեղանի գրքերն են:

Շոլոխովի ստեղծագործությունները ուղեկցում են մեզ դարի դժվարագույն ճանապարհներով, հաղորդակից դարձնում հերոսների շատ բարդ, երբեմն ողբերգական ճակատագրերին: Շոլոխովը սովորեցնում է մեզ մարտընչող մարդասիրություն և յուրաքանչյուր տողով ամրապնդում հավատը դեպի ժողովուրդը և մարդը:

Ապշեցնում է [illegible]ադը, երիտասարդ Շոլոխովի տաղանդի սրընթացությունը: Նա հրամցնում էր իր զարմանալի արձակը հատոր հատորի ետևից բացառիկ արագությամբ: Ետպատերազմյան տարիներին գրողի քայլքը դանդաղեց: «Հերկած խոպանի» երկ-



րորդ հատորի ստեղծումը երկար տարիներ պահանջեց։

Ընթերցողները սպասում էին։ Նրանք շտապեցնում էին հեղինակին։ Բայց նա չէր շտապում։ Աշխատում էր գրքի վրա, կատարելագործում, մինչև հասավ այն պահը, երբ կարելի էր հանձնել տպագրության։ Այդ տարիները հատուկ ընդգծվածությամբ ի հայտ բերին շոլոխովյան եզակի համբերատարությունը և համառությունը աշխատանքի մեջ։

Հիմա նույն նվիրումով և պահանջկոտությամբ նա աշխատում է իր դեռ անավարտ «Նրանք մարտնչում էին հայրենիքի համար» վեպի վրա։

Շոլոխովի ճակատագիրը ընդհանուր առմամբ արտակարգ երջանիկ ճակատագիր է։ Առաջին իսկ հատորներից՝ համաժողովրդական, այնուհետև և՝ համաշխարհային լայն ճանաչում։ Երեսունհինգ տարեկան հասակում դասական՝ այնպիսի բարձրարվեստ գրականության մեջ, ինչպիսին ռուս գրականությունն է։ Շոլոխով գրողի և քաղաքացու գործունեության բազմաթիվ փաստերը պարտադրում են ասել, որ նա չափազանց ինքնատիպ, արտահայտիչ անձնավորություն է, մեծ անհատ։

Հանրահայտ գրողի կյանքն անցնում է մարդկանց աչքի առաջ։ Եվ կարծես, աշխարհի ուշադիր հայացքի առջև բացվում են Վիշենսկայա ստանիցայի տան դռները, հյուրընկալելով բազմաթիվ այցելուների։

Մնում է միայն զարմանալ, թե որտեղից է Շոլոխովը այդքան ժամանակ գտնում բազմաթիվ հանդիպումների համար։ Ամերիկայի Միացյալ Նահանգներից «Խաղաղ Դոնի» և «Հերկած խոպանի» հեղինակին այցելեց ամերիկացի գրող... Ռոստովից ժամանեցին գրականագետներ... Մոսկվայից եկած կինոաշխատողները Դոնի մասին նոր նկարահանումներ սկսելուց առաջ ուզում են լսել Միխայիլ Ալեքսանդրովիչի խորհուրդները... Մի քանի օր շարունակվեց գրողի զրույցը պատերազմում ծանր վիրավորված գեներալի հետ... Պայմանավորվեց հանդիպել ուսանողների հետ...

Շոլոխովը մշտական պահանջ ունի լինել երիտասարդության հետ, իմանալ, ինչպես են նրանք ապրում, աշխատում, հանգստանում։

Այո, դա գրողի բնական պահանջն է։ Եվ դրանում է, անկասկած, այն ստեղծագործական ակունքը, որն իրավունք է տվել Միխայիլ Շոլոխովին բազմիցս ասել իր երիտասարդ ընկերներին.

— Ամենակարևորը՝ չծերանալ հոգով։

# ՍՐՏԱՑԱՎ ԱՂՎԵՍԸ

ՇՄԱՎՈՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ



Գիշերը բակից կորավ ծեր թուխսը,
Եվ դեռ հազիվ էր նոր բացվել լույսը,
Եկավ աղվեսը՝ սև շորեր հագած,
Աքլորի ձեռքը սեղմեց ու ասաց.
— Կորուստը մեծ է,
Հազվագյուտ հավ էր,
Ամենքիս համար
Դա ծանր ցավ է։
Հիմա պիտի մենք
Սրտանց, միասին
Հոգ տանենք նրա
Որբերի մասին։
Ձեր բույնը նեղ է,
Ուտելիքը՝ քիչ,
Իսկ ես հարուստ եմ,
Ունեմ ամեն ինչ,
Որբերին տվե՛ք
Որդեգրեմ ինձ։



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

# ՎԱՀԱՆ



Ճանապարհը ոլորվելով բարձրանում է ցողաշաղախ ծաղիկների ու խոտերի միջով, քսվում է ամպերին, իջնում է նորից, պըտըտվում, ձգվում է և սպառ ու արձակ գնում է, գնում: Թվում է, ո՛չ վերջ կա, ո՛չ սկիզբ:

Ամայության մեջ լեռան լռություն է, թռչունների վնգոց, ծաղիկները այնպես են բացվել, ասես ճչում են: Ճանապարհը կորչում է խոտերի մեջ, ապա ելնում է և աղբյուրների հետ գնում է դարձյալ... Հիշողության մեջ աշուն է, մշուշ, անձրև, փիառ ու խոնարհ Նաիրին է ելնում դարերի միջից, հիշողության մեջ հըրաժեշտի ու վերադարձի, մոռացման ու լքման ղողանջներ և մըթընշաղի նուրբ երանգներ: Աչքիս առջև քո կերպարն է, վաղուց մեռած բանաստե՛ղծ: Ես գնում եմ դեպի քո հայրենի գյուղը, որպեսզի նրա պատերից ու երկնքից, սարողներից ու երեկոյից զգամ քեզ, լսեմ քո ձայնը՝ հպարտ ու խոցված, փիառ ու պայծառ:

Սաղամո լճից բարձրանում, գըրնում ես մի քիչ ու բլրի ետևում երևում են Գանձայի տանիքները: Երևում է եկեղեցին, դու սկսում ես որոնել բանաստեղծի տունը՝ եկեղեցու կողքին (եկեղեցին կառուցվել է Տերյանի պապի միջոցներով): Գետի մեջ երեխաները գառներ են լողացնում, կանայք գորգեր են փռել գլաքարերին: Մի՛ էլ հարցրու, թե որն է Տունը: Նըրանք հայացքով քեզ կուղեկցեն, կհասցնեն այնտեղ:

Եկեղեցու բակը լայն է: Դու ուզում ես գտնել Տունը: Սա՛ է: Սա՛ է: Հողաշեն, միահարկ, փոքր լուսամուտներով: Հին շեմից ներս ես դնում ոտքդ, գտնում քեզ կիսախավարում: Այստեղ ծնվել է, այստեղ տարիներով ապրել է, կարոտել է այս պատերին, այս թոնրին: Հիշել է ամբարը, ծխապատ երդիկը, մրսելիս հագել է այս վերարկուն, որը կոպիտ է ու անհրապույր և հիմա կախված է պահարանում: Մոսկովյան անձրեվոտ գիշերներին մտովի վերադարձել է այստեղ, հիշել այն օրը, երբ իրեն տարան Ախալքալաք, և ուրեմն հիշել է նաև գունավարդ խուրջինը, որ հիմա կախված է պահարանում: Երդիկի լույսը հազիվ է լուսավորում թոնրատունը: Գլխահակ անցնում ես փայտե լայն մահճակալի մոտով և հայտնըվում ես փոքրիկ, փայտե օրորոցի մոտ, պարզ վարդերով, կաշվե ցանցով: Դու համբանում ես և քեզ թվում է, թե լսում ես թաթիկների շարժում, լաց, և տեսնում

# ԿԵՂԾ ԸՆԿԵՐԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

*ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Եկեք փորձենք ազնվորեն մտաբերել, թե մեզանից ամեն մեկը քանի՛-քանի անգամ է նկատել ընկերոջ կողմից կատարված մանր զանցանքը և այն չտեսնելու տվել, հանդիմանելու փոխարեն լռել կամ նույնիսկ ինչ-որ ձևով խրախուսել նրան: Այդպիսի շատ ու շատ դեպքեր կարող ենք հիշել և հիշելիս էլ կարծես թե ոչ մի տարօրինակ բան չենք նկատում մեր վարմունքի մեջ, կարծես թե անհանգստանալու հարկ չկա: Ի՞նչ է նշանակում սա, ի՞նչն է այս անտարբերության պատճառը:*

*— Նրանք փորձում են ընկերասեր ձևանալ,— այսպես են պատասխանում միլիցիայի մանկական սենյակների աշխատակիցները,— ճիշտ այնպես, ինչպես դասից մի քանի րոպե առաջ «մեծահոգաբար» տնային աշխատանքների տետր են տրամադրում արտագրելու համար: Եվ եթե ընկերոջը տնային աշխատանքը շտապ-շտապ արտագրելու հնարավորություն տալով, «օգնում» ես, որ նա թողնի դասը սովորածի սուտ տպավորություն, ապա ընկերոջ զանցանքի դեմ աչք փակելը ավելի հեռուն է տանում, հասցընում վտանգավոր հետևանքների:*

*Մի քանի տարի առաջ դժվար թե Վարուժանին ճանաչողներից մեկնումեկի մտքով անցներ, թե նա ընդունակ է հանցագործության: Նա միայն տեղիանտեղի վիճում ու կռվում էր դասընկերների հետ, իրեն պահում իբրև թե անկախ: Ընկերներից ոչ մեկը վատ հետևանքներ չգուշակեց նաև այն օրը, երբ Վարուժանը դասի ժամանակ վեճի բռնվեց տղաներից*

# ՏԵՐՅԱՆԻ ԾՆՆԴԱՎԱՅՐՈՒՄ

## (ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ես նրան՝ ճերմակ շապիկով, սև աչքերով:

Օրորոցի վրա մայրը կապույտ ուլունք է կախել: Այս միջանցքով քայլել է նա, այս սեղանի մոտ նստել է Իսահակյանը: Շեմից դուրս գալիս արևը շլացնում է քեզ: Հետո հեռվում, բլրի վրա երևում է մենավոր տնակ: Քեզ ասում են, որ դա սբ. Հովհաննես մատուռն է: Այստեղ շատ է նստել նա: Այստեղից մայրամուտն ու արշալույսը նրբակերտ են:

Հեռվում Աբուլն է ամպերի մեջ: Այս պատի տակ է մայրը նստել պտտել իլիկը իր հին, և մոր ծընկներին գլուխը դրած քնել է նա:

Հին տան կողքին, տուն-թանգարանն է՝ սև տուֆից, լայն պատուհանով թիթեղյա տանիքով: Սրահի պատերից կախված նըկարները ծանոթների պես քեզ են նայում: Եղիշե Չարենցն ու Մահարին նրա արձանի մոտ նըկարված: Իսահակյանը, Թումանյանը, Գորկին: Ահա կինը՝ Սուսաննան, Տերյանի դագաղի մոտ: Լազարյան ճեմարանը: Մոսկվայի այն փողոցը, որտեղ ապրել է նա: Պողոս Մակինցյանը: Բանաստեղծի ձեռագիրը, տարբեր տարիքի նկարներ, տխուր, ժպտուն, անտարբեր: Նկարների մեջ ուշադըրավ է մի քարտեզ: Քարտեզը ցույց է տալիս այն ճանապարհը, որով անցավ նա վերջին անգամ՝ Մոսկվա-Օրենբուրգ: Քարտեզի մոտ վկայականն է, Լենինի ստորագրությամբ: Բանաստեղծը հատուկ հանձնարարությամբ գնում էր Տաշքենդ: Բայց Օրենբուրգի կայարանի հիվանդանոցում «հավետ հարյավ»: Եվ թաղվեց երկիր Նաիրիից հեռու: (Երկիր Նաիրի, երազ հեռավոր):

Մթնշաղը հանդարտ հալվում է սարերին, արտերին, ճանապարհը անցնում է Փարվանա գետի մոտով: Ճանապարհը բարձրանում, իջնում է: Երեկոն իր վրանն է խփում լեռներին: Այս ճանապարհով գնացել է նա, դեմքը շրջել դեպի գյուղը՝ Գանձա... և մի օր, երբ հոգնած է եղել, եղել է հեռու, և եղել է հիվանդ, հիշել է գյուղն իր՝ Գանձա, և շրթունքները անձայն շշնջացել են.

> Ինձ մեր տունը տարեք,
> Տարեք Գանձա...

* * *

Գիշերը կիջնի հիմա և տունը կնմանվի մատուռի: Տունը միայնակ կմնա լուսնի դեմ: Իսկ առավոտյան դարձյալ կսկսվի այցելուների երթը, կգան տարեցները, կգան երեխաները, կարթնանան բանաստեղծի նիրհած հիշատակները, կարթնանա նրանց հետ բանաստեղծի շունչը և կխառնվի այցելուների օրվան:

*ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

*մեկի հետ, բռունցքով նրա դեմքին հարվածեց ու դուրս փախավ դասարանից:*

*Գուցե այս անգամ էլ ամեն ինչ մնար անհետեվանք, եթե Վարուժանը փողոցում չհանդիպեր իր մի խումբ «քաջ» ընկերներին, որոնց պատմեց եղածը, և ընկերները որոշեցին «մի լավ դաս տալ» այն հանդուգն տղային: Դրանից հետո ամեն ինչ զարգացավ մեծ արագությամբ: «Ընկերները» դարանակալեցին տղայի վերադարձի ճանապարհին, նրան ծեծեցին՝ հասցնելով մարմնական ծանր վնասվածքներ, ապա մի պատահական ավտոմեքենա նստելով՝ փախան: Սակայն մի քանի կիլոմետր չհեռացած, վթարի ենթարկվեցին՝ բախվելով բեռնատար ավտոմեքենայի: Իսկ հետո միլիցիայում իրենք էլ չէին կարողանում բացատրել իրենց արարքի դրդապատճառները...*

*Դեպքերի զարգացման այսպիսի հաջորդականությունը օրինաչափ է համարյա ամեն մի հանցագործության դեպքում: Իր մի հանցանքը թաքցնելու, հետքը կորցնելու նպատակով, հանցագործը ստիպված է լինում դիմել նոր, երբեմն ավելի վտանգավոր արարքների: Այդպիսով ստացվում է իրավախախտումների մի ամբողջ շղթա, որը միշտ էլ իրավախախտին կանգնեցնում է օրենքի և պատասխանատվություն կրելու անհրաժեշտության առջև:*

*Մանկական սենյակներում քարտարաններ կան, որտեղ պահվող քարտերում դպրոցական կամ դպրոցահասակ տղաների անունները ու նրանց կատարած իրավախախտումներն են գրանցված: Եթե մեկը սայթաքում է, ապա դա կատարվում է ոչ միայն իր մեղքով: Նշանակում է ընկերները անուշադրության են մատնել նրան, կշտամբելու փոխարեն անփույթ ծիծաղել են նրա մանր զանցանքների վրա, որ նշանակում է խրախուսել:*

*Հանցանքը կանխելն ավելի հեշտ է, քան նրա հետևանքները վերացնելը, իսկ հետևանքները միշտ չէ, որ վերանում են առանց ծանր հետքերի:*

# ՀՅՈՒՐԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

Վ. ՄԱԼՈՎ

1975 թվի հուլիսի 15: Յոթուկես ժամվա տարբերությամբ Բայկոնուրից և Կանավերալ հրվանդանից մեկնարկ վերցրին «Սոյուզ» և «Ապոլոն» տիեզերանավերը: Մեկնարկից 51 ժամ 55 րոպե անց նրանք «կառամատչելով» իրար՝ տիեզերքում կցում կատարեցին: Ամերիկյան աստղանավորդներ Թոմաս Ստաֆորդը և Դոնալդ Սլեյտոնը եկան «Սոյուզի» խցիկ՝ Ալեքսեյ Լեոնովին և Վալերի Կուբասովին հյուր: Անձնակազմերի անդամները իրենց երկրների դրոշները և հուշանվերներ փոխանակեցին: Համատեղ ստորագրվեց տիեզերքում առաջին միջազգային կցման վերաբերյալ փաստաթուղթը, և սովետական տիեզերագնացները ամերիկացի իրենց գործընկերներին «տիեզերական ճաշկերույթ» տվեցին:

Այս թռիչքի ժամանակ ամեն ինչ առաջին անգամ էր կատարվում: Տիեզերագնացության պատմության մեջ առաջին անգամ իրար հանդիպեցին երկու երկրների տիեզերանավեր: Առաջին անգամ սովետական և ամերիկյան անձնակազմերը համատեղ ուսումնասիրություններ կատարեցին տիեզերքում: Առաջին անգամ էր նաև տիեզերքում «ճաշկերույթի սեղանի» մոտ հանդիպումը: Ամերիկացի աստղանավորդները ըստ արժանվույն գնահատեցին հյուրասիրությունը:

## Թևավոր խոսքեր

### ԵՐԿՐՈՐԴ ՇՆՉԱՌՈՒԹՅՈՒՆ

Ինչպես ասացինք, «թևավոր խոսքերի» մեծ մասը շատ հին ծագում ունի՝ Աստվածաշունչ, հունական առասպելներ, հինավուրց պատմական ավանդություններ ու պատմվածքներ՝ ահա դրանց ծագման սովորական աղբյուրները:

Բայց «թևավոր խոսքերի» այս առատության կողքին կա մի այլ բան ևս. այդ խոսքերը ծնվում են ամեն օր մեր առօրյա կյանքում: Դրանք ստեղծում են գիտնականները ու արվեստի մարդիկ, բանվորները ու գյուղացիները, բոլորը: Նման արտահայտությունների մենք շատ ենք հանդիպում: Ահա, օրինակ, դրանցից մեկը, որ լայն գործածություն է գտել: Սա ստեղծել են ֆիզկուլտուրնիկները, սպորտսմենները, ավելի ճիշտ, վազքի վարպետները:

Երբ սպորտսմենը վազքի վարժություններ է անում, վաղ թե ուշ նա հոգնում է: Եթե տարածությունը երկար է, հոգնածությունը դառնում է անտանելի. ոտքերը հրաժարվում են վազել, սիրտը ասես կտոր-կտոր է լինում կրծքավանդակում և, ամենակարևորը, անբավարար է դառնում շնչառությունը: Կանգ առնե՞լ:

Անփորձ մարդը կանգ կառնի. վազքի վարպետը ուժ է գործադրում և շարունակում վազել: Եվ, օ՜, հրաշք, մի քանի վայրկյան անց հոգնածությունն անցնում է, շնչառությունը կանոնավորվում, ուժերը վերականգնվում են. սա երկրորդ շնչառությունն է:

Քսան տարի առաջ այս տերմինն օգտագործում էին միայն վազող ատլետները, դա նրանց մասնագիտական տերմինն էր: Այսօր դա հնչում է ամեն մի մասնագետի լեզվում: Երկրորդ շնչառության մասին խոսում են աշխատանքից հոգնած գիտնականները, թեպետև լաբորատորիաներում նստած՝ նրանք շնչահեղձ չեն լինում: Ասում են բանաստեղծները, երբ անհաջողություններից ու ձախողումներից հետո վերսկսում են աշխատանքը և հասնում հաջողության... «Երկրորդ շնչառություն» ասելով, հասկանում ենք վերագտած նոր ուժեր: «Նա ձեռք է բերել երկրորդ շնչառություն»,— այսօր ասում ենք այն մարդու մասին, որ հաղթահարել է հոգնածությունը և ուժերի անկումը:

Այս տերմինը դարձել է պատկերավոր արտահայտություն և մտել լեզվի մեջ:

### ԱՆԱՌԱԿ ՈՐԴԻՆ

Լենինգրադի Էրմիտաժ թանգարանում է գտնվում հոլանդացի մեծ նկարիչ Ռեմբրանդտի «Անառակ որդին» նկարը, ուր պատկերված է ծեր, բարետես հոր և ցնցոտիապատ, տանջահար որդու երջանիկ հանդիպումը: Ռեմբրանդտի այս նկարի հիմքում ընկած է ավետարանական սյուժե թեթևամիտ որդու մասին, որ հեռացել է հայրենական տնից, շատ տառապանքներ կրել, իսկ երբ վերադարձել է, մեծ սիրով և ուրախությամբ ընդունվել է ամեն ինչ ներած ծնողի կողմից: «Անառակ որդու առակը» շատ հուզիչ է. արդեն բազմաթիվ հարյուրամյակներ այդ առակը գիտե ողջ աշխարհը և ամենուրեք «անառակ որդի» արտահայտությունը նշանակում է մարդ, որ թեթևամտորեն արհամարհում է իր հարազատներին, իր տունը, ընտանիքը և հայրենիքը փոխարինում օտարությամբ:

# ՈՒՂԵԾՐՈՒՄ



Իսկ տիեզերքում ի՞նչ է մատուցվում հյուրասիրության ժամանակ: Ինչպե՞ս է պատրաստվում տիեզերական սնունդը: Այս հարցերը հավանաբար շատերին կհետաքրքրեն: Պատասխանելու համար լրագրողը այցելեց Մոսկվայի լաբորատորիաներից մեկը:

Լաբորատորիայում սեղանի վրա դրված էր արծաթագույն մի բեռնարկղ: Այն մեծ չէր, հազիվ լիներ հեռուստացույցի սովարաթղթե արկղի չափ:

— Ահա այսպիսի բեռնարկղերի մեջ է տեղադրվում տիեզերագնացների սնունդը,— ասաց լաբորատորիայի վարիչ Լիդիա Իվանովնա Կուզնեցովան:— Բեռնարկղը նախատեսված է ամենահավաք փաթեթավորման համար: Ոչ մի դատարկ մաս չի լինում, քանի որ տիեզերանավի խցիկում անգնահատելի է ամեն մի սանտիմետրը:

Լիդիա Իվանովնան բարձրացրեց բեռնարկղի կափարիչը և սեղանի վրա հայտնվեցին գունագեղ, ալյումինե փականով պարկուճներ, մատնոցի չափ պստլիկ հացի բոքոնիկներ՝ պոլիէթիլենե պատյանի մեջ, հատուկ, դժվարահալ շոկոլադի փոքրիկ սալիկներ, պաքսիմատի աղյուսիկներ... Պարկուճները «համով» մակագրություններ ունեին. «Կանաչ կաղամբապուր», «Ապխտած մսով բորշչ», «Թռչնախյուս», «Սև հաղարջե խյուսով ժաժիկ» և այլն:

— Այստեղ կան առաջին և երկրորդ տեսակի ճաշեր, քաղցրավենիք, անուշեղեն...— ասում է Լիդիա Իվանովնան և բեռնարկղից տիեզերական սննդի նորանոր նմուշներ հանում:

— Ձեր «խոհարարական գրքում» քանի՞ ճաշատեսակ կա,— վերջապես հարցրի ես:

— Յոթանասունից ավելի: Տիեզերագնացների ցուցակը մեծ է, և ամեն ոք իր ճաշակը, իր սովորություններն ունի: Հիմա տիեզերական խոհարարները բավականին փորձ ունեն, բայց պատկերացրեք, թե ինչքան դժվարություններ կային սկզբում Գագարինի, Տիտովի, Նիկոլաևի, Պոպովիչի ժամանակ:

Վերհիշենք ոչ հեռու անցյալը: Թռիչքից հետո, առաջին տիեզերագնաց Յուրի Գագարինին մամուլի ասուլիսում տրված բազմաթիվ հարցերից մեկը հետևյալն էր. «Ինչպե՞ս էիք սնվում թռիչքի ժամանակ: Սովորական ուտելիք էի՞ք օգտագործում, թե՞ հատուկ, որը նախատեսված է անկշռելիության պայմաններում սնվելու համար»: Իհարկե, հատուկ սննդով, որն ընտրվել էր բազմաթիվ մասնագետների երկարատև ու քրտնաջան աշխատանքի շնորհիվ: Տիեզերական սնունդը պետք է շատ պահանջներ բավարարեր: Պետք է այնպես պատրաստվեր, որ ուտելիքի կտորները անկշռելիության պայմաններում տարբեր կողմեր չթռչեին: Այն պետք է լավ պահպանվեր, լիներ անթերի փաթաթված ու հավաք: Պետք է լիներ շատ սննդարար և կալորիական: Եվ որ քիչ կարևոր չէր՝ պարզապես պետք է շատ համեղ լիներ: Առաջին տիեզերագնացների առաջին և երկրորդ ճաշատեսակները քսուքների ձևով էին, պարկուճների մեջ: Տիեզերագնացները գոհ էին համից, բայց բողոքում էին, որ այդպիսի ճաշերը չի կարելի ծամելով ուտել: Ստիպված էին նոր ձև գտնել: Ճաշերի մեջ մտցրին ծամելու համար կտորներ: Սակայն դա էլ այնքան հաջող չէր. ուտելիքը երբեմն դուրս չէր գալիս պարկուճից, խանգարում էին այդ կտորները: Նորից ժամանակ ու բազմաթիվ փորձեր պահանջվեցին, մինչև լաբորատորիայում պատրաստված ճաշերը համարվեցին հիանալի: Տիեզերագնացները գոհունակության շատ խոսքեր ասացին սնունդը պատրաստողներին: Բայց լաբորատորիայի աշխատակիցները չբավարարվեցին ձեռք բերածով. այսօր էլ պատրաստվում են ճաշերի նորանոր տեսակներ:

Ինչպե՞ս է պատրաստվում տիեզերական սնունդը: Կարծես թե հեշտ է. «երկրային» որևէ ճաշատեսակի նմանողությամբ պետք է պատրաստել «տիեզերական» տարբերակը և լցնել պարկուճների մեջ: Իրականում բոլորովին այդպես չէ: Հիշենք, թե ինչ պահանջներ էին հայտնում տիեզերագնացները: Ամենագլխավորը՝ սնունդը պետք է արտակարգ բարձր կալորիականություն ունենա, օրգանիզմին առավելագույն կալորիաներ տա: Հետևաբար՝ տիեզերական ճաշ պատրաստելը, ասենք թե սովորական կարտոֆիլի խյուս, նախ և առաջ գիտական որոնում է: Տիեզերական խոհանոցն էլ, չնայած այստեղ կա և՛ ամանեղեն, և՛ մսաղաց, և՛ սառնարան, և՛ սեղան, նախ և առաջ գիտական լաբորատորիա է, որն ունի ժամանակակից սարքավորումներ ու գործիքներ: Միայն այն դեպքում, երբ տեսականորեն հաշվարկված է ուտելիքի բաղադրությունը, լաբորատորիան խոհանոց է դառնում և պատրաստվում է փորձնական առաջին նմուշը: Ի միջի այլոց, սա ևս չի պատրաստվում այնպես,



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՐԳԱՐԻՏԸ

ԱԼԲԵՐՏ ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

*Խոսքը քարերի մի տեսակի՝ պեռլիտի մասին է: Ֆրանսերեն «պեռլիտ» նշանակում է մարգարիտ: Գեղեցիկ բառ է, չէ՞: Բայց ոչ միայն գեղեցիկ...*

*1949 թվականին էր: Գյումուշգէս կառուցողները դժվարության առաջ էին կանգնել: Ի՞նչ էր պատահել:*

*Հրազդան գետի վրա կառուցվում էր այն ժամանակվա համար հանրապետության ամենախոշոր ջրաէլեկտրակայանը: Ինժեներները, փորձառու շինարարները զլուխ էին կոտրում թեթև բետոն ստանալու համար: Բայց որտեղի՞ց: Այդպիսի բան դեռ գոյություն չուներ:*

*Հայաստանը բետոնի հայրենիքն է: Անհիշելի ժամանակներից մեր նախնիները տաճարներ էին կառուցում, գեղեցիկ կոթողներ, ամրոցներ ու բերդապարիսպներ: Նրանք հաստահեղույս պատերը շարում, միջուկը լցնում էին բետոնի շաղախով: Այդպես դարերով կանգուն են մնացել Էջմիածնի մայր տաճարը, Հաղարծինը, Հռիփսիմեն, Հառիճը, Ծիրանավորը, Կարմրավորը, Հաղպատը, Սանահինը, Կեչառիսը և ուրիշ շատ վանքեր ու եկեղեցիներ:*

*Նայելով հազար, երկու հազար տարի առաջ կառուցված և այժմ կիսավեր կամ խորտակված հուշարձանների ու նրանց պարիսպների մնացորդներին, այսօր էլ զարմանք է պատճառում շաղախի ամրությունը: Ամբողջ պատը հիմքից շուռ է եկել անդունդ, բայց քարերը ամուր շաղախված են մնացել իրար:*

ինչպես սովորաբար տնտեսուհիներն են անում: Տեսությանը լրացնում է փորձը, և այդ ընթացքում շատ փոփոխություններ կարող են լինել: Հետո պատրաստի ուտելիքը քննում է մանրէաբանը, բծախնդրորեն մանրէազերծում: Երբ անալիզը բավարար է, կարելի է ասել, որ աշխատանքն ավարտված է...

Տիեզերական ճաշատեսակների պատրաստման արտադրական գործողությունները պակաս հետաքրքիր չեն լաբորատորիայում կատարվող փորձերից: Տեսնենք, թե ինչպես է պատրաստվում բոլոր տիեզերագնացների սիրած բորշչը: Բոլոր մթերքները, նույնիսկ ամենաբարձր որակի, ենթարկվում են նախնական մշակման: Օրինակ, ճակնդեղը, մինչև թույլատրվի եփման արտադրական գործողությանը մասնակցելու, շոգեխաշում են հատուկ սարքավորման մեջ, իսկ աղը լցնում են մագնիսե որսիչ ունեցող մաղի միջով, որպեսզի հեռացվեն խառնուրդները: Այսքանից հետո միայն կարելի է մոտենալ վառարանին: Տիեզերական խոհանոցը մի էական տարբերություն ունի երկրայինից. այստեղ բոլոր մթերքները պատրաստվում են առանձին-առանձին, տարբեր շոգեամաններում. 30-50 գրամանոց մսի կտորները, բանջարեղենը, արգանակը... Եփելուց հետո տիեզերական ապագա բորշչի բաղադրիչ մասերը պետք է անցնեն մի շարք սարքավորումների միջով: Արգանակը պետք է քամել, մսի կտորները, բանջարեղենը, սոխը, պղպեղը պետք է էլ ավելի մանրել, որպեսզի նրանց չափը չանցնի հինգ միլիմետրից: Այդպիսի կտորները կարելի է ծամել, բացի այդ, դյուրությամբ են դուրս գալիս պարկուճի միջից: Նման աշխատանքը կատարում են հատուկ մաղացները: Այսքանից հետո միայն բոլոր մասերը իրար են միանում տաքացվող առանձին խառնարանում: Մի՞թե բորշչը պատրաստ է: Այո, կարելի է փորձել: Համով համարյա չի տարբերվում երկրայինից, միայն... թթու է: Պատճառը դժվար չէ բացատրել: Այդպիսի բորշչը շատ է դուր գալիս տիեզերագնացներին. ուղեծրում չգիտես ինչու թթու բորշչը սովորականից ավելի համով է թվում:

Անմիջապես սկսվում է հաջորդ գործողությունը: Պատրաստի բորշչը 160 գրամանոց բաժիններով լցնում են ալյումինե պարկուճների մեջ: Պարկուճ լցնող մեքենան ճշգրտորեն մաս-մաս է անում խտացված բորշչը, լցնելուց հետո փակում երկու ծայրերն էլ և ուղարկում մանրէազերծման: Բորշչը պատրաստ է: Երբ ճաշի ժամը գա, պարկուճը կտաքացնեն հատուկ էլեկտրական վառարանում և տիեզերագնացները ախորժակով կսկսեն ուտել:

Արդյո՞ք պարկուճը ամենահարմար ձևն է: Անվիճելի է, որ հարմար է, բայց լաբորատորիայի աշխա-



Հայկական բետոնի ամրության մասին սերունդները առասպելներ են հյուսել: Կիրը, ասում են, իբրև շաղախված է եղել կաթով ու ձվի դեղնուցով:

Իհարկե, ո՛չ կաթ, ո՛չ դեղնուց: Հայ շինարարները կրին ավելացնում էին կիսով չափ կավ և ապա բարձր ջերմաստիճանի տակ խարկում, ստանում էին բարձրորակ ցեմենտ: Այդ ցեմենտը նրանք խառնել են տուֆի մանրուքի կամ գետի ավազի հետ և ստացել ամրությամբ նմանը չունեցող շաղախ:

Եվ հիմա, մեր օրերում, Գյումուշի ջրաէլեկտրակայանի տեղամասերից մեկում խիստ անհրաժեշտ էր այդպիսի ամրապինդ ու թեթև բետոն: Վերջապես, մասնագետները հայտնագործեցին ցանկալի շինանյութը: Գետերի վրա կատարվող կառուցվածքներից աշխարհում առաջին անգամ այստեղ օգտագործվեց մոտ կես միլիոն խորանարդ մետր թեթև բետոն: Ամուր ու թեթև: Այդ հիանալի լցանյութը պեռլիտն էր: Հազար ու մի բանի պիտանի հրաբխային ապարը, որով այնքան հարուստ է մեր հանրապետությունը:

Բայց, ի վերջո, ի՞նչ բան է պեռլիտը:

Պեռլիտը թեթև հրաբխային ապար է, սպիտակ-մոխրագույն քար: Իր տեսքով նման է քարաղի: Այլ կերպ՝ պեռլիտը անվանվում է հրաբխային ապակի:



Դուք հավանաբար տեսած կլինեք պեմզա և սև փայլուն ապակու նման քարեր, որին ժողովուրդը «սատանի եղունգ» է ասում: Դրանք էլ պեռլիտի ցեղակիցներն են:

Բայց ամենից զարմանալին պեռլիտի փքվելու հատկությունն է, որ հայտնաբերեցին գիտնականները:

— Ինչպե՞ս թե՝ փքվելու,— կզարմանան շատերը:

«Արագածի ստորոտում, Արտենի լեռան մոտ է գտնվում պեռլիտի հանքավայրը և հումքը մշակող գործարանը: Պայթեցված խոշոր հանքաքարերը բեռնաթափվում են գործարանի ջարդման-տեսակավորման բաժանմունքում: Այստեղ ուզած չափի մանրացվելուց հետո հանքանյութը փոխադրվում է ջերմային մշակման բաժանմունք, հատուկ վառարաններում խարկելու համար: Վառարան-հնոցներում հազար աստիճանից ավելի ջերմության տակ խարկվում-բովվում է պեռլիտը: Եվ հենց մեր աչքերի առաջ կատարվում է զարմանալին: Ծակոտկեն այդ չեչոտ քարերը և նրանց աղացած ավազահատիկները փքվում են, թեթևանում մինչև տասնութ-քսան անգամ: Վառարանից հանած այդպիսի մի պարկ պեռլիտը մանկապարտեզի երեխան վազեվազ կբարձրացնի աստիճաններով...

Շինարարները պեռլիտը խառնեցին ցեմենտին և ստացան հավաքովի երկաթ-բետոնե թեթև կոնստրուկցիաներ: Դրանք օգտագործվում են նորակառույցների հարկերը, տանիքը ծածկելու և ուրիշ գործերում: Պեռլիտը լավ կապակցող նյութ է ոչ միայն ցեմենտի հետ խառնելիս, այլև՝ կավի, հեղուկ ապակու, բիտումի, կրի, պոլիմերների, խեժերի հետ: Դրանց միացությունից պատրաստում են ձայնամեկուսիչ սալիկներ և այլ իրեր:

Գնալով ավելի ու ավելի է մեծանում Հայաստանի մարգարիտի՝ պեռլիտի պահանջը: Որպես թորողզտող նյութ, այն պետք է սննդի, թեթև ու քիմիական արդյունաբերությանը: Որպես կաղապարող նյութ՝ շատ է հարկավոր մետաղ ձուլողներին: Պեռլիտը օգտագործվում է նաև կերամիկայի, ապակու և բյուրեղապակու, գինու, լիմոնադի, գարեջրի, շաքարի, բացախաթթվի արտադրության մեջ:

Հայկական մարգարիտն օգտագործում են նաև գյուղատնտեսության ասպարեզում: Այսօր պեռլիտն օգտագործվում է ջերմոցների հողի նախապատ-

---

տակիցները այնուհետդերձ շարունակում են նոր, ավելի գործնական ձև որոնել: Ինձ ցույց տվեցին տիեզերական սննդի մի նոր ձև՝ սուբլիմացված (ջանձր փիճակից անմիջականորեն գազայինի անցնելը): Պոլիէթիլենե փոքրիկ տոպրակներում կային չորացված, ջրազրկված խտածո սննդամթերք. սուպ, կաղամբապուր, կաթ: Դրանք ավելի քիչ տեղ են զբաղեցնում, քան պարկուճները: Տիեզերքում հերիք կլինի տոպրակների հատուկ անցքերի միջով տաք ջուր լցնել, որպեսզի ճաշը պատրաստ լինի: Այս սննդամթերքները նույնպես փորձարկման են ենթարկվել տիեզերքում՝ Գուբարևի և Գրեչկոյի կողմից: Թռիչքից հետո տիեզերագնացներից մեկը պատմեց, թե ինչքան հաճելի էր տիեզերանավի խցիկում ճաշակել սուբլիմացիայի ենթարկված... պաղպաղակ:

Անհնար է գրել տիեզերական սննդի մասին և հանտես չանել: Ճիշտ է, ես ճաշում էի ոչ թե տիեզերանավում, այլ մերձմոսկովյան էլեկտրաքարշի վագոնում: Երկնագույն Երկիր մոլորակի, աստղերի փոխարեն՝ պատուհանի մոտով սահուն կերպով անցնում էին կեչիները: Բայց, հավանաբար, այս են հիշում տիեզերագնացները ճաշասեղանի մոտ: Այս են հիշում այնտեղ՝ տիեզերքում:

Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑԻ

«Յունի տեխնիկ», 1975 թ., N 8

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՁԵՐԺԻՆՍԿՅԻՆԵՐԸ

Դրուժինան նոր էր շարվել, երբ անսպասելի հնչեցին շեփորները, դղրդացին թմբուկները և տողան-հրապարակ սուրացին հեծանվորդները: Առջևից գնացողը տանում էր դրուժինայի դրոշը, իսկ մյուսները՝ ջոկատային դրոշները: Պատվո շրջան կատարելուց հետո, նրանք կանգնեցին ջոկատների առաջ, և Երևանի Ձերժինսկու անվան միջնակարգ դպրոցում սկսվեց «Կոմունիստներից օրինակ ենք վերցնում» նշանաբանով դրուժինայի հավաքը: Այն նվիրված էր անվանի հեղափոխական Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկու ծննդյան 98-ամյակին:

Հավաքին մասնակցում էին շեֆ կազմակերպության՝ անվտանգության կոմիտեի ներկայացուցիչները, որոնք էլ հենց ղեկավարում են «Ձերժինսկիական» ակումբի աշխատանքները:

Պահեստի գնդապետ Լևոն Կարապետյանը զինվորական ուսումնարանում սովորելու տարիներին մի քանի անգամ տեսել ու լսել է Ձերժինսկուն:

— Նրա անմիջական ու ազդեցիկ խոսքով ներշնչված ես սահմանապահ դարձա,— ասաց գնդապետը.— Ֆելիքս Էդմունդովիչը հմայիչ արտաքինով, բայց պարզ ու խիստ մարդ էր: Լեգենդար հերոսի անունն է կրում ձեր դպրոցը: Աշխատեցեք նմանվել նրան, նվիրված լինել հայրենիքին, ինչպես նա:

Ի պատասխան գնդապետի կոչին, պիոներները կարդացին «Ձերժինսկիական» ակումբի անդամ դառնալու պայմանները. ակումբի անդամ դառնալու համար պետք է օրինակելի աշակերտ լինել, երեք տարի անընդմեջ միայն բարձր գնահատականներ ստանալ, ակտիվորեն մասնակցել պիոներական և կոմերիտական կյանքին:

Հավաքի մասնակիցները վճռեցին ավանդական դարձնել այդ օրը: Ակումբի յուրաքանչյուր անդամներին առաջարկել Ձերժինսկու անվան հետ կապված վայրերը: Նյութեր հավաքել նրա ծննդյան 100-ամյակի առթիվ, իրենց ձեռքով վաստակած միջոցներով արձանը կանգնեցնել դպրոցի բակում, կապեր ստեղծել համանուն դպրոցների հետ և «Ձերժինսկիական» ջոկատների հավաք կազմակերպել:

Այնուհետև տողան-հրապարակում կատարվեց վեցերորդ դասարանի չորրորդ ջոկատի անվանակոչությունը: Ջոկատն անվանակոչվեց անվանի հեղափոխական Թեոդոր Նետտեի անունով: Այդ պատվին արժանանալու համար ջոկատի պիոներները շատ աշխատանքներ էին կատարել: Նրանք հավաքի մասնակիցներին պատմեցին հռչակավոր լատիշական հրաձիգների գնդի հրամանատար Թեոդոր Նետտեի կյանքի հերոսական էջերից մի քանիսը: Նրա ղեկավարած գունդը բազմաթիվ փառավոր հաղթանակներ է տարել սպիտակգվարդիականների և հեղափոխության թշնամի այլ ուժերի դեմ: Հիմնականում նրա վրա էր դրված Սմոլնու պաշտպանությունը: Նետտեն, որի անունը կրեց ջոկատը, այդ բոլոր առաջադրանքները կատարել է իր գնդով: Այնուհետև կառավարությունը մի կարևոր հանձնարարություն է տվել հրամանատարին. շատ մեծ նշանակություն ունեցող դիվանագիտական փաստը Վարշավա հասցնել:

Ռիգայի ճանապարհին նրա վրա են հարձակվել մի քանի սպիտակգվարդիականներ: Նետտեն կռվի է բռնվել նրանց հետ, երկուսին սպանել է, մեկը փախել է: Փաստը փրկել է, բայց ստացած ծանր վերքից զոհվել է նաև ինքը:

Ջոկատի անդամները կապեր են ստեղծել նրա անունը կրող շոգենավի անձնակազմի հետ: Նավաստիները նրանց հրավիրել են իրենց հետ ճամփորդելու:

Հավաքի հիմնական նպատակներից մեկն էր 25-րդ համագումարի անվան ջոկատի կոչմանն արժանանալու համար մրցության պայմանների քննարկումը: 25-րդ համագումարի անվանն արժանանալու համար ջոկատի յուրաքանչյուր անդամ պետք է լավ ու գերազանց գնահատականներ ստանա, պիոներական ակտիվ աշխատանք տանի «Կոմունիստներից օրինակ ենք վերցնում» երթի բոլոր երթուղիների գծով, օրինակելի ու կարգապահ աշակերտ լինի:

Այնուհետև դպրոցի բակում բոցավառվեց հսկա խարույկը, որի շուրջը, ինչպես միշտ, ծայր առան պիոներական երգեր, պարեր ու զվարճալի խաղեր:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

---

*րաստման ժամանակ, իսկ վաղը, ով գիտե, գուցե մեծ օգուտ տա այգեգործությանը՝ պեռլիտի լուծույթով սրսկված այգիները, ցրտից չվախենալով, գուցե այլևս չթաղվեն, չծածկվեն հողով: Գիտե՞ք ինչ ծանր աշխատանքից կազատվեն այգեգործները: Այլևս հարկ չի լինի տասնյակ հազարավոր հեկտար խաղողի այգիներ աշնանը ծածկել հողով, իսկ գարնանը նորից բացել:*

*Այսօր արդեն, ապակե տարայի արտադրությունը յոլա չի գնա առանց պեռլիտի: Չէ՞ որ հենց ինքը՝ պեռլիտը հրաբխային ապակի է: Հոկտեմբերյան քաղաքում նրա հումքի վրա կառուցվում է ապակե տարայի գործարան:*

*Երևանի «Շինանյութ» գործարանում ստեղծվել է մի փորձնական արտադրամաս, որը կոչվում է «Պեռլիտապակեպլաստ»: Այստեղ արտադրված իրերը փորձարկվում են շինարարության մեջ և լավ արդյունք են տալիս:*

*Մեր գիտնականների առաջարկով պեռլիտից ստացվող բյուրեղասիլիկատը բարձրորակ հումք է*



# ԼԵԶՈՒՆԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

*ՎԻԳԵՆ ԱՎԱԳՅԱՆ*
*(Բանասիրական գիտությունների թեկնածու)*

Սամեդդին թագավորը, որպեսզի իմանա, թե առաջին լեզուն որն է եղել և ինչպես է այն առաջացել, հասարակությունից մեկուսացնում է երկու նորածինների այնպես, որ նրանք մարդու երես չտեսնեն: Այդ երեխաները, երբ բավականաչափ հասակ են առնում, սկսում են միմյանց հետ ինչ-որ ձևով խոսել: Առաջին բառը, որ նրանք արտասանել են, իբր թե, եղել է **«բեկոս»**, որը փռյուգերեն նշանակում է **«հաց»**: Այստեղից էլ հետազոտողը ենթադրել է, որ մարդկային առաջին ինքնուրույն լեզուն փռյուգերենն է (ընդսմին, Փռյուգիան, ըստ պատմաբանների, գտնվել է Բալկանյան թերակղզու արևմտյան մասում):

Մի այլ հետազոտողի տվյալներն էլ ենթադրել են տալիս, իբրև թե առաջին լեզուն ոչ թե փռյուգերենն է, այլ հին հրեաների՝ եբրայերենը: Լեզվի ծագման մասին ստեղծվել են բազմաթիվ գեղեցիկ, բայց միամիտ ու գիտական հիմքից զուրկ առասպելներ:

Այսպես, օրինակ, ըստ Աստվածաշնչի՝ լեզուն աստվածային մի պարգև է՝ տրված Ադամին, որպեսզի նա հաղորդակցության մեջ մտնի մյուս մահկանացուների հետ: Լեզվի աստվածատուր բնույթի մասին է նաև Բաբելոնի աշտարակաշինության հետ կապված առասպելը. իբր թե ողջ մարդկությունը խոսելիս է եղել մի ընդհանուր լեզվով, բայց երբ մարդիկ հին Բաբելոնում որոշել են մի աշտարակ շինել ու բարձրանալ, հասնել աստծուն, աստված աշտարակաշինարարների վրա բարկացել ու խառնել է նրանց լեզուն այնպես, որ ոչ մեկը մյուսին չհասկանա, և աշտարակաշինությունն այդպիսով ձախողվել է: Այնուհետև «պատժված» մարդիկ ցրվել են աշխարհով մեկ, տարել ամեն մեկն իր հետ մի լեզու:

Լեզվի ծագման վերաբերյալ եղած փաստերի սանդղակով բարձրանալով՝ որոշ ուսումնասիրողներ հայտնել են այն կարծիքը, թե լեզվի մեջ եղած բոլոր բառերը ծագել են ձայնարկություններից ու բնաձայնություններից: Որ լեզվի մեջ կան թե՛ ձայնարկություններ և թե բնաձայնական բառեր՝ անառարկելի է (վա՜յ, փո՜ւ, չա՜ն, շրը՜խկ, չը՜խկ և այլն), բայց դրանց թիվը 300-ից չի անցնում, մինչդեռ լեզուների բառագանձում կան միլիոնավոր բառեր (հաց, ջուր, գիրք, տուն, ծով, քար...)

Լեզվի ծագման հարցը որոշ չափով գիտական հիմքերի վրա դրեցին ֆրանսիական լուսավորիչները (Ռուսո, Դիդրո): Ռուսոն, օրինակ, լեզվի ծագման հարցը կապում էր **մարդու ծագման ու նրա հասարակական հարաբերությունների հետ**: Սա վիթխարի առաջընթաց էր:

...19-րդ դարը գիտա-տեխնիկական հեղաշրջման ժամանակաշրջան էր: Այդ հեղաբեկումը մտավ նաև լեզվաբանության ոլորտը: Լեզվաբանությունը, որպես գիտություն, ձևավորվեց ու դրվեց իսկական գիտական հիմքերի վրա: Անդրադառնալով լեզվի ծագմանը՝ մարքսիզմի կլասիկները, հենվելով նախորդ գիտական առողջ ժառանգության վրա, առաջ քաշեցին ուսանելի շատ դրույթներ: Ըստ Էնգելսի՝ բանական մարդը, նախապես առաջանալով մարդանման կապիկից, անցել է հետագա զարգացման ու կատարելագործման երկար ճանապարհ: **Աշխատանքը և հոդաբաշխ խոսքը** վիթխարի նշանակություն ունեցան մարդու մարդ դառնալու ճանապարհին: Այդ **հիմքի** վրա խարսխված է **կոլեկտիվ համախմբումը**: Եվ, վերջապես, **հաղորդակցման պահանջը**: Մարդը աշխատելիս, հասկանալի է, օգնության կարիք է զգում: Դրա համար նա պիտի դիմի մեկին: Լեզուն և գիտակցությունը, ծագելով միաժամանակ, միմյանցով պայմանավորված տարրեր են: Հետևաբար, գիտակցության զարգացումը լեզվի զարգացման նախապայմանն ու արդյունքն է: Իսկ գիտակցության զարգացումը, անտարակույս, անխզելիորեն կապված է **կոլեկտիվ աշխատանքին**, որը և խթանել է մարդու ֆիզիկական կատարելագործմանը (ձեռք, գանգ, շրթունք, կոկորդ, բերան... հնչյուններ՝ հոդաբաշխ «բառեր» արտասանելու համար):

Սակայն, վերջիվերջո, ինչպե՞ս առաջացան բառերը, ո՞րն է առաջին բառը, որ արտասանել է մարդը:

Հասկանալի է, որ սա անլուծելի խնդիր է: Գիտությունը միայն արձանագրում է, որ արդի ժամանակաշրջանում նոր **բառարմատներ չեն ստեղծվում**, իսկ նոր բառեր՝ որքան կուզեք (տիեզերանավ, լուսնագնաց, հրթիռ...) Ի դեպ, ենթադրություններ կան, թե, իբր, նոր ժամանակներում է ստեղծվել **գազ** բառը: Սակայն դա քննադատության չի դիմանում, քանի որ նշվում է, որ այդ բառը հունարեն «քաոս» բառից է ծագել, որ նշանա-

---

*հանդիսանում շինարարության համար: Նրանից պատրաստում են հատակապատման և երեսապատման սալիկներ, միջհարկային և տանիքի ծածկի պանելներ, խողովակներ և այլ առարկաներ:*

*Պեռլիտը արագորեն մուտք է գործում նաև մեր կենցաղը: Փորձնական մի արտադրամաս էլ կաշխատի Արզնու բյուրեղապակու գործարանում: Պեռլիտից կստացվի բյուրեղապակի և տնտեսական ամաններ: Սա արդեն բոլորովին նորություն է մեզ համար:*

*Մեր լայնարձակ հայրենիքի գրեթե բոլոր կողմերում էլ պեռլիտ կա: Հեռավոր արևելքում, Միջին Ասիայում, Ղազախստանում, Արևելյան Սիբիրում, Անդրկովկասում: Բայց ամենից հարուստը մեր հանրապետության հանքավայրերն են՝ Արագածում, Ակունքում, Ջրաբերում և այլ վայրերում: Սովետական Միության պեռլիտի հանույթի ամենամեծ բաժինը՝ 95 տոկոսը, տալիս է Հայաստանը:*

*Հայաստանի պեռլիտը արտահանվում է նաև արտասահման՝ Բելգիա, Իտալիա, Ֆրանսիա և այլ երկրներ:*




# ՀԱՄԵՐԳ՝ ՀԱՎԵՐԻ ՀԱՄԱՐ

*Հավանաբար, որոշ ժամանակ անց, թռչնաֆաբրիկաներում երաժշտական խմբագրի կարիք կզգացվի: Կարող է պատահել, որ երաժշտությունը մտնի թռչնաբույծների ուսուցման ծրագրի մեջ:*

*Զարմանալի ոչինչ չկա այս ենթադրության մեջ: Մինսկի թռչնաբուծական արտադրական միավորման փորձը ցույց տվեց, որ ածան հավերին երաժշտությունը պարզապես անհրաժեշտ է, ըստ որում ոչ թե ամեն տեսակ, այլ թեթև երաժշտության ընտիր համերգները: Ահա թե ինչպես պարզվեց այդ:*

*Մի քանի տարի առաջ Մինսկի Լենինի շքանշանակիր Կրուպսկայայի անվան թռչնաֆաբրիկան անցավ ձվերի արդյունավետ արդյունաբերության: Թռչունների վանդակային պահման տեխնոլոգիայի ներդրումը արտադրության մեջ, առաջացրեց ածան հավերի օդափոխության, ջեռուցման, կոյուղու, լուսավորության և, իհարկե, սնուցման ավտոմատացված սիստեմների ստեղծման անհրաժեշտություն: Ֆաբրիկայի մասնագետները նախագծեցին և մոնտաժեցին տեխնոլոգիական պրոցեսների կենտրոնական կառավարման էլեկտրոնային վահանակ: Այդ վահանակի օգնությամբ լավագույն ձևով պահպանվում է ռեժիմը ինկուբատորներում և թռչնանոցներում, որոշակի ծրագրի համապատասխան կարգավորվում է լուսավորությունը ածան հավերի շենքերում, կատարվում է ջրտուքը, բեռնվում են կերաբաշխիչները, հավաքվում են ձվերը, հեռացվում աղբը:*

*Ֆաբրիկայի վերակառուցման ժամանակ պարզվեց, որ ինչպես ամեն թռչուն, հավերը ևս վախենում են աղմուկից, կողմնակի մարդկանցից: Բավական էր, օրինակ, միացնել կերաբաշխման կոնվեյերը (այն համարյա անաղմուկ է շարժվում), որ ածանները սկսեն հիստերիկ կերպով կչկչալ, խփվել վանդակի ճաղերին, իսկ անծանոթ մարդու հայտնվելը առաջացնում էր իսկական խառնաշփոթ: Աղմուկը վերացնելու համար, ռադիոֆիկացրին արտադրամասերը և նկատեցին, որ երաժշտական հաղորդումների ժամանակ հավերը չեն արձագանքում ո՛չ աղմուկին, ո՛չ էլ անծանոթ մարդկանց հայտնվելուն: Որոշվեց թռչնանոցներում մագնիտոֆոնի վրա ձայնագրված երաժշտություն հաղորդել: Փորձը հաջող անցավ: Այդ ընթացքում, ճիշտ է, պարզվեց ևս մեկ նորություն. դանդաղ, ռիթմիկ երաժշտությունը թմրեցնում էր հավերին, նրանք պակաս ախորժակով էին ուտում, ավելի վատ էին ձու ածում: Փորձնական նպատակով հաղորդեցին թեթև երաժշտության համերգներ և, ինչպես ասում են, ամեն ինչ իր տեղն ընկավ: Հավերը դարձան առույգ, խուճապի չեն մատնվում, լավ աճում են, հաճույքով ձու են ածում:*

---

կում է «գազային խառնաշփոթություն»: Կարծիք կա նաև, որ դա գերմաներենի «գաս» բառից է առաջացել, որ նշանակում է «շունչ, հոգի»: Երրորդ կողմը պնդում է, որ **գազը** ոչ այլ ինչ է եթե ոչ՝ նրա ստեղծող Վան Հելմոնտի աղջիկների անվան սկզբնատառերի գումարը), ինչպես վերջերս բժշկության մեջ մտավ Ֆիսա դեղը, որի անունը կազմված է նրա ստեղծողների ազգանունների սկզբնատառերի միացումից: Կամ էլեմենտը, որը լատինական լ, մ, ն, տ տառերի մեխանիկական գումարն է):

Բառերի առաջացման ուղղությամբ արդի գիտության վերջին խոսքը հետևյալն է. եղել է մի շրջան, երբ լեզվի գոյացման ընթացքում **հասարակության մեջ** ապրող մարդը, **ներքին պահանջից դրդված,** մեկին ինչ-որ բան ասելու համար, արտասանել է **հնչյունակապակցություն,** ընդսմին վերջինս իր կոնկրետ իմաստն է ստացել աշխատանքի այդ պահին: Այդ հնչյունակապակցությունն էլ դարձել է այն **բառը,** որով անվանակոչվել է տվյալ առարկան:

Նախամարդու տարերայնորեն արտասանած հնչյունակապակցությունները հետագա սերունդների համար ոչ թե պատահական, այլ, ընդհակառակն, իմաստակիր իսկական բառեր են ներկայացել: Հոլանդացի լեզվաբան Եսպերսենը իր «Լեզու» գրքում վկայակոչում է ֆրանսիացի ճարտարապետ Վիկտոր Ռնոյի փորձը: Վերջինս ուսումնասիրելով Հարավային Ամերիկայի **բոտոկուդոս** ցեղի կյանքը, նկատում է, որ այդ ցեղի մարդիկ, հանդիպելով որևէ անծանոթ առարկայի, նայում են միմյանց, ապա նրանցից մեկը բարձր արտասանում է ինչ-որ հնչյունակապակցություն: Մյուսները խմբով հետևում են նրան՝ մի քանի անգամ կրկնում նույն հնչյունակապակցությունը: Սա թերևս ասում է, որ առարկայի անվանակոչումը այդպես է եղել: Նույն բանը նկատվում է աֆրիկյան որոշ ցեղերի մեջ:

Երկրագնդի վրա եղել են 3000 լեզուներ, որոնց կեսի մասը մոռացվել-անհետացել է՝ տվյալ լեզվով խոսող ժողովրդի հետ միասին: Այսօր բազմաթիվ լեզուներ կարգանում են փոխադարձ կապվածությամբ: Ընդ որում պարզված է համարվում այն լեզուն, որը ծագումնաբանորեն հին է և քերականական կառուցվածքով կուռ ու ճկուն: Այդպիսիներից է և հայոց լեզուն, որն ունի շուրջ 3000 տարվա պատմություն (գրավոր՝ մոտ 1600):

*Սակայն սա դեռ բոլորը չէ. համերգները ազատեցին թռչնաբուծներին աշխատանքի միօրինակ տաղտուկից: Հավերի համար տրվող համերգները ֆաբրիկայում ստացան «տեխնոլոգիական երաժշտություն» անվանումը: Այժմ կառավարման կենտրոնական վահանակի վրա աշխատանքային օրվա սկսվելու հետ միացվում է մագնիտոֆոնը, և «տեխնոլոգիական երաժշտության» հերթական համերգը հաղորդվում է թռչնանոցներում:*

*Վերջում չի կարելի չնշել Մինսկի թռչնաֆաբրիկայի աշխատանքը բնութագրող մի քանի թվեր: Անցյալ, 1974 թվին ֆաբրիկայում պահվում էր մոտ 800 000 ածան հավ, որոնք մեկ տարում 275 միլիոն ձու ածեցին: 1000 ձվի վրա կատարվող ծախսումները կազմեցին մոտ 2,2 մարդ-ժամ: Թռչնաբուծական արտադրական միավորումը հնգամյա պլանը կատարեց 3 տարի 9 ամսում:*





## «ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՅԹ-75»

### ԵՐԿՐՈՐԴ ՓՈՒԼ

1. «Ալա մյուս տղան է գնում նարնանների գաղտնիքը իմանալու»: Ի՞նչ գաղտնիքի մասին է խոսքը: Ո՞վ է պատմվածքի հեղինակը: Ինչի՞ մասին է խոսվում պատմվածքում:

2. «Մի քանի րոպե հետո սերժանտ Կուզմինի ձեռքում գրիչի փոխարեն ավտոմատ էր»:

Ո՞ր նյութից է վերցված այս նախադասությունը: Ո՞վ է սերժանտ Կուզմինը: Ինչո՞ւ էր գրիչը զենքով փոխարինել:

3. «Տղային չհետաքրքրեց նաև բայանը. նա որոնում էր ջութակը...»

Ինչպե՞ս է ավարտվում նախադասությունը: Ի՞նչ տղայի մասին է խոսքը: Ո՞րն է պատմվածքի բուն իմաստը:

4. «Ծեր ապխս ու իր ջահել կինը չեն անհանգըստանա...»

Ո՞ր նյութից է վերցված այս նախադասությունը: Ո՞վ է այդպես մտածում: Ի՞նչ գիտեք հեղինակի մասին:

Լույս է տեսնում 1928 թվականից

№ 12 դեկտեմբեր 1975 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05941: Պատվեր 2362: Տպաքանակ՝ 79 200: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 12/XII 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

